

# ԿՐԵՄԼ

Կրեմլ՝ ամրոցի հինավուրց անվանումն է: Հին քաղաքներից շատերի կենտրոնում, գետի բարձրադիր ափին, կամ բլուրի վրա, բարձրանում են կրեմլների պարիսպներ: Բայց և այնպես, երբ ասում են «Կրեմլ», ապա անպատճառ պատկերացնում ես Մոսկվայի Կրեմլի պարիսպները և ասես թե լսում ես կուրանտների հնչեղ զարկերը:

1917 թվի հոկտեմբերյան ճակատամարտի օրերին Սպասսկյան աշտարակի ժամացույցը վնասվել էր արկից: Վլադիմիր Իլյիչ Լենինի առաջարկով նորոգեցին: Հմուտ փականագործ Նիկոլայ Վասիլևիչ Բերենսը երաժիշտ ու նկարիչ Միխայիլ Միխայլովիչ Չերեմնիխի հետ միասին ոչ միայն ուղղեցին ժամացույցը, այլ նրան «սովորեցրին» կատարել կոմունիստական հիմնը՝ «Ինտերնացիոնալը»: Կրեմլի ժամացույցն սկսեց հաշվել նոր պետության՝ սովետների հանրապետության, ժամանակը:

1918 թվի մարտի 12-ին հանրապետության կառավարությունը Պետերբուրգից տեղափոխվեց Կրեմլ և Մոսկվան հռչակվեց մեր երկրի մայրաքաղաքը: Մոսկովյան Կրեմլն ունի հինգ գլխավոր աշտարակ՝ Սպասսկյան, Տրոիցկյան, Նիկոլսկյան, Բորովիցկյան և Վոդովզվոդնյան: 1937 թվից այդ հինգ աշտարակների վրա շողշողում են սուտակե հնգաթև աստղերը:

Կրեմլը ոչ միայն Մոսկվայի հինավուրց կենտրոնն է, այլ մեր ամբողջ երկրի կյանքի կենտրոնը: Մեր հայրենիքի տարբեր ծայրերից այստեղ Գերագույն սովետի նստաշրջանի են հավաքվում ժողովրդի ընտրյալները: Այստեղ է գտնվում Սովետական Միության կառավարությունը: Կրեմլի Համագումարների պալատում են անցկացվում մեր կուսակցության համագումարները:

Մոսկվայի Կրեմլը նման է փոքրիկ քաղաքի: Այստեղ, ինչպես ամեն մի իսկական քաղաքում, կարելի է շրջել փողոցներով, հայտնվել ընդարձակ հրապարակում կամ նստել կանաչ պուրակում: Գարնանը Կրեմլի այգիներում ծաղկում են խնձորենիներն ու բալենիները, իսկ ամռանը ծաղկաթմբերին բացվում են վարդերն ու վարդակակաչները:

Ինչպես ցանկացած քաղաքում, Կրեմլում ևս կան հուշարձաններ: Ռուս ձուլողների ու թնդանոթագործների վարպետության հուշարձանները՝ Զանգ-արքան և Թնդանոթ-արքան: Սովետական հանրապետության համար մղված կռիվներում զոհված կարմիր հրամանատարների գրանիտե հուշարձանը: Մեր պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի հուշարձանը:

*ԼԵՈՆԻԴ ՅԱԽՆԻՆ*

# ԴԵՊՔ՝ ՊԱՏԱՀԱԾ ԷՔՍԿՈՒՐՍԻԱՅԻ ԺԱՄԱՆԱԿ

ՀՈՒԳԵՐ ՓՈՒԿՍ

Վագոնը ինչպես միշտ, լեփ-լեցուն էր: Ուղևորների մեջ շատ երեխաներ կային. յոթերորդ Ա-ի պիոներական ջոկատը լրիվ կազմով մեկնում էր էքսկուրսիայի: Էքսկուրսիան նրանք պարգև էին ստացել: Դպրոցի միջանցքում կախված էր աղյուսակ, և այնտեղ յոթերորդ Ա-ի սյունակում ամենից շատ կարմիր դրոշակիկներ էին հայտնվել՝ և՛ թիմուրական աշխատանքի, և՛ մակուլատուրա հավաքելու համար, և՛... իսկ վարում՝ կարմիր գծի տակ նշված էր արդյունքը՝ «ԱԻՊ» որ վերծանվում էր այսպես՝ «Ամեն ինչ՝ ինչպես պետք է»: Դա բարձր գնահատական էր, որ նշանակում էր՝ ավելին անել չէր կարելի: Եվ այնուամենայնիվ դա այնքան էլ արդար գնահատական չէր, որովհետև, ինչպես հայտնի է, ամեն մի գործ կարելի է ավելի լավ անել:

Քանի որ երեխաները վագոնում սովորականից ավելի շատ էին, չափահասներից ոմանք հայացքները սևեռեցին նրանց վրա: Խստադեմ մի մորաքույր նույնիսկ աթոռի վրա շրջվեց կողքի, այդպես ավելի հար-

մար էր հետևել, թե ինչ է կատարվում դիմացի լուսամուտի մոտ: Այնտեղ նստած էին վեցը՝ մի նստարանի վրա մի տղա երկու աղջիկ, մյուսին՝ երեք ավելի մեծ տղաներ: Խստադեմ մորաքույրն իսկույն մտածեց, որ մեծահասակ տղաները դպրոցականների հետ չեն գնում, պատահաբար են ընկել նրանց մեջ:

— Պետք է ասել, որ նա այդ հարցում միանգամայն ճիշտ էր: Խստադեմ մորաքույրը տեսնում էր, որ երեք ավելի մեծ տղաները աշխույժ խոսում են և ուրախ ծիծաղում, հաճախ դիմելով իրենց դիմաց նստած երեխաներին:

«Ի՞նչ էլ քաղցր կրուցում են փոքրիկների հետ»,— մտածեց խստադեմ մորաքույրը: Բայց ցավոք, այստեղ նա սխալվում էր:

Փոքրերը ինչ-որ չէին մասնակցում կրույցին: Ավելին, նրանք անմատչելի տեսք էին առել: Կարմրաթուշ տղան մռայլ դուրս էր նայում լուսամուտից: Նիհարավուն աղջիկը, հայացքը հատակին սևեռած, ամուր գրկել էր ծնկները: Իսկ բարձրահասակ, ակնոցավոր աղջիկը ծուռ-ծուռ նայում էր ուրախ տղաներին: Սակայն նա նույնպես ծպտուն չէր հանում:

Անիվները դղրդում էին: Վագոնում աղմուկ էր: Բայց տղաների խոսքերն ու ծիծաղը շատ լավ լսում էին և՛ աղջիկները, և՛ պատանին:

Սկսեց մռայլ Անդրեսի դիմաց նստածը.

— Տե՛ս, մանկապարտեզը ինչ-որ տեղ են տանում:

Մյուսը ինչ-որ բան ասաց ծծակի, երրորդը գիշերանոթի մասին և մի որոշ ժամանակ նրանք քննարկում էին մանկապարտեզային առարկաներ: Հետո անցան անձանց, սկսեցին աղջիկներից.

— Երկարուկ մի կմախք, դեռ հալա, ակնոցն էլ քթին...

Այդ ասվեց Լեյդայի մասին, որովհետև ակնոց էր կրում: Այլիի դիմաց նստած տղան քրքջաց.

— Նայի՛ր մի մամայի աղջկան, տես ո՞նց է ծնկները բռնել:

Տղան նորից բերանը բացեց, որպեսզի դառնա կրկին Լեյդային, բայց հանդիպեց այնպիսի ոչնչացնող հայացքի, որ միայն քրքջաց ու դարձավ նորից Այլիին:

Անդրեսը հայացքը չէր կտրում լուսամուտից: Նստել էր դիք, ասես շամփուր էր կուլ տվել: Նրա ձեռքերը գրպաններում բռնցքվում էին: Խավար ապակու ետևում հոսում էին անտառակներ, կղմինդրյա տանիքներով գորշ տնակներ, ճանապարհներ՝ փոշեպատ ավտոմեքենաներով: Ձանձրալի պատկեր էր: Բայց Անդրեսը շարունակում էր նայել լուսամուտից դուրս, որպեսզի չտեսնի դիմացը նստած, վերին շրթունքի վրա սև աղվամազով ինքնաբավական տղային: Ահա հիմա էլ այդ տղան դարձավ ու ձեռ առավ երկու թթված օրիորդների ճինով կավալերին:

Անդրեսը իրեն բոլորովին կորցրեց: Նա զգաց, թե ինչպես տաք հոսանք էր բարձրանում իր մեջ, շառագունում էին այտերն ու վիզը: Ամոթ էր զգում, բայց ինչ պատասխան վերադարձնել այդ ծաղրասերին: Ամեն մեկը չէ, որ սրամիտ է ծնված:

— Քթի՞ն նայիր, կեռի՞կ է որ կա, կարող ես վերարկուդ կամ հովանոցդ կախել,— լսեց Անդրեսը: Գիտեր, որ այդ Այլիի մասին է:

Բռունցքները գրպաններում այնպես սեղմվեցին, որ մատների ծայրերը ցավեցին: Անդրեսը զգում էր, որ ինքը պետք է անմիջապես օգնի Այլիին, պաշտպանի նրան: Բայց ինչպե՞ս: Ինչպե՞ս անի այդ:

Անդրեսը աչքի պոչով նայեց Այլիին:

Աղջիկը առաջվա պես ցած էր նայում: Ձեռքերը սեղմված էին ծնկներին: Մատներն ամուր հյուսվել էին իրար, նույնիսկ թեթևակի կապտել էին և խղճալի ու անօգնական էին թվում, ասես սպասում էին, որ մեկը տաքացնի կամ փաղաքշի իրենց: Անդրեսին դա այնպիսի ցավ պատճառեց, որ չէր կարողանում նայել նրանց: Նա դարձյալ հայացքն հառեց լուսամուտին: Բայց լուսամուտից դուրս այլևս չկար ո՛չ անտառ, ո՛չ տնակներ, ո՛չ ճամփաներ: Վագոնի լուսամուտի ապակու վրա, Անդրեսի աչքի առաջ անշարժացել էր Այլիի դեմքը, խոշոր, լուսաշող աչքերով, քթիկը վեր և կզակը վեր ցցված: Եվ այդ դեմքը ծիծաղում էր, և այդ ծիծաղն այնպես սրտալի էր, այնպես անհոգ, հենց նոր իրար առաջ կտրելով՝ վազել էին և երկուսով կամրջակից թավալվել էին ծանծաղ գետակի մեջ:

Այլին տակավ է ժպտում: Ասես չի համարձակվում:

Նա երկչոտ է: Նա ամաչկոտ է:

Բայց նա պետք է ժպտա: Նա անպայման պետք է ուրախ լինի:

— Այ քեզ աղջի՛կ,— ականջի տակ ասաց կոպիտ ձայնը,— մատները կապտած են, ոնց որ մեռելի մատներ...

— Բա հյու՛սքը, հյու՛սքը,— արձագանքեց երկրորդը,— ոնց որ առնետի պոչ լինի:

Անդրեսը վեր թռավ ու առ հա կտաս փիրավորողի մոթին:

Ապտակի ձայնը վագոնով մեկ թնդաց:

— Աստվա՜ծ իմ,— աղաղակեց խստադեմ մորաքույրը, տեղից վեր ցատկելով,— որտե՞ղ է ուսուցչուհին, այստեղ ուղղակի ծեծում են, ինչպիսի՜ վայրենություն...

Ավագ ջոկատավարի օգնական Լորայի ձեռքից հատակին ընկավ էսթետիկայի դասագիրքը: Դա նիհար, փխրուն առաջին կուրսեցի էր, նա շատ էր սիրում դատողություններ անել գեղեցիկի և բարեկրթության մասին: Լորան այս էքսկուրսիային պետք է գար ավագ ջոկատավար Մերիի հետ, բայց վերջին պահին պարզվեց, որ Մերին բակետորդի մրցում ունի և Լո-

րան մնաց մենակ դպրոցի տասնութ լավագույն պիոներների հետ: Աստվա՜ծ իմ, ի՞նչ են նրանք այնտեղ արել:

Լորան շտապեց դեպքի վայրը:

Այս տղան այն պատանուն ապտակեց. ինչպիսի՜ վանդալիզմ,— շնչահեղձ ասաց խստադեմ մորաքույրը, մատը տնկելով Անդրեսի վրա:

Անդրե՞ս,— հարցրեց Լորան խիստ ձայնով:

Այո,— ցածրաձայն ասաց տղան և ոտքի կանգնեց:

Ինչպե՞ս թե «այո»— բացականչեց Լորան, ոտքը հատակին խփելով,— դու նրան խփեցի՞ր:

Խփեցի,— պատասխանեց Անդրեսը:

Լորան դառնացած հառաչեց: Դժվար էր հավատալ, ու նա չգիտեր ի՞նչ անել և ի՞նչ ասել:

Ներողությո՛ւն խնդրիր... իսկո՛ւյն ներողություն խնդրիր,— ասաց Լորան առաջին բանը, որ գլուխն եկավ:

Չեմ խնդրի,— խոժոռվելով պատասխանեց Անդրեսը, սևեռուն նայելով այդ համարյա բեղավոր տղայի ջինսին:

Ինչպե՞ս թե չես խնդրի,— հառաչեց Լորան շնչահատ:

Տղաներն իրենց համար զրուցում էին այնպես ուրախ, այնպես համերաշխ,— վրա տվեց խստադեմ մորաքույրը,— նրանք ուզում էին ընդհանուր զրույց վարել, իսկ սա վերցրեց ու խփեց, խփեց երեսին:

Այդ ընթացքում Լորայի առաջին վախն անցավ, և նա տվեց մի հարց, որ պետք է տար հենց սկզբից: Նա հարցրեց.

Իսկ դու ինչո՞ւ նրան խփեցիր:

Անդրեսը չպատասխանեց: Անդրեսը կանգնել ու լռում էր. Անդրեսը չէր կարող այդ հարցին պատասխանել... Այլապես նա պիտի պատմեր Այլիի դուրեկան ժպիտի մասին, այն մասին, թե որքան ամաչկոտ է նա, և թե որքան հեշտ է նրան ցավ պատճառելը, և որ չի կարելի նրան նեղացնել... Բայց այդ մասին ասել չի լինի: Գուցե մի ինչ-որ ժամանակ, ինչ-որ մեկին, բայց ոչ այստեղ՝ վագոնում:

Եվ Անդրեսը ոչինչ չասաց:

— Աղջիկնե՛ր, Անդրեսը ինչո՞ւ խփեց նրան,— կրկնեց Լորան:

Այլին չպատասխանեց: Այլին ոչ մի դեպքում չէր պատասխանի: Շուրջը բոլորն սպասում էին, որ նա մի որևէ բան կասի: Այդ դեպքում նա պետք է կրկներ բոլոր այն զզվելի բաները, որ իր մասին ասացին մեծ տղաները: Եվ նա պետք է Անդրեսի մասին էլ ասեր: Գուցե մի ինչ-որ ժամանակ, ինչ-որ մեկին... Ո՛չ, ո՛չ, նույնիսկ մորը իբրև գաղտնիք նա չէր կարող պատմել, թե ինչպես մի անգամ Անդրեսը մամուռ լցրեց իր բաշմակի մեջ, բայց պարզվեց, որ մամուռ չէր, այլ մամուռով ծածկված խնձոր...

Լեյդան նույնպես չէր կարող ոչինչ ասել: Գիտեր, որ Անդրեսը չէր ուզենա, որ ասեր, որովհետև և՛ Այլին, և՛ Անդրեսին տհաճ կլիներ այդ:

— Նրանք նույնիսկ բան չեն գտնում, որ ասեն,— նորից խոսեց խստադեմ մորաքույրը, ցնցելով Լորայի թևը,— տեսնո՞ւմ եք, ընկերուհի՛, նրանք ձեզ էլ բանի տեղ չեն դնում:

Լորան բորբոքվեց և անառարկելի տոնով հայտարարեց.

— Առաջիկա կայարանն հասնելուն պես, Անդրե՛ս, կիջնե՛ս, տուն կգնաս և պատահած գնացքով կվերադառնաս տուն: Դու իրավունք չունես մեր էքսկուրսիային մասնակցելու: Դու արժանի չես:

Այլին ցնցվեց, բայց հայացքը չբարձրացրեց: Նա ասես, քարացել էր, միայն թերթերունքները դողդողացին: Եվ այտերով հոսեցին արցունքները: Նա չըհամարձակվեց նույնիսկ ձեռքը բարձրացնել, որպեսզի արցունքները սրբի: Նրան թվում էր, թե այդ որ անի, չի կարողանա իրեն զսպել և բարձրաձայն կըտկա:

Անդրեսը շարունակում էր լուսամուտից դուրս նայել: Միայն Լեյդան նայեց ուղիղ Լորայի աչքերին, ջղայնորեն ուղղեց ակնոցը և հաստատապես ասաց.

— Ես նույնպես տուն կգնամ:

— Դու ինչո՞ւ կգնաս,— զարմացավ Լորան:

— Հանուն ընկերասիրության,— ասաց Լեյդան և կրկին ուղղեց ակնոցը: Յոթերորդ Ա-ից միայն Լեյդան կարող էր իրեն թույլ տալ նման տոնով խոսել, որովհետև նա միշտ գիտեր, թե որտեղ ինչ ասի և երբ ինչ վճիռ ընդունի:

Անդրեսը նստեց: Նա նստեց անբնական ուղիղ ու ձիգ: Ձեռքերը ամուր, շատ ամուր կառչեցին աթոռի ծայրին:

«Ինչո՞ւ Այլին ոչինչ չասաց....»

«Ինչու Այլին ոչինչ...»

«Ինչու Այլին...»

Դա նրա գլուխն եկած առաջին միտքն էր: Քիչ անց նա հիշեց Լեյդային:

Լեյդա... պետք է ասել, որ նա չվերադառնա... Տարօրինակ էր, որ նրան անհանգստացրեց Լեյդայի հրաժարվելը էքսկուրսիայից: Անկեղծ ասած, նա ոչ միայն վշտացավ Լեյդայի համար, այլև անհանգստացավ իր համար:

Նա Լեյդայից խուսափում էր: Միշտ փոքր-ինչ երկյուղ էր կրում նրանից... Լեյդան չափազա՜նց... չափազա՜նց... իսկ թե չափազանց ի՞նչ, Անդրեսը չէր կարող ստույգ բացատրել: Գուցե, պարզապես Լեյդան շատ խելացի էր ու վճռական... Հավանաբար չափազանց խելացի էր ու վճռական: Ո՛չ, բանն այդ չէր: Նա չափազանց հպարտ էր, թեև ի՞նչ չափա-

ւանց... հիմարություն էր կարծել, թե չափազանց հպարտ է...

«Ինչի՞ մասին պետք է նրա հետ խոսեմ, երբ գընացքում մնանք երկուսով»,— սարսափով մտածեց նա:

«Իսկ Ալլիի՞ հետ,— հարցրեց նա ինքն իրեն և էլ ավելի շատ վախեցավ: Որովհետև Ալլիի հետ բոլորովին չէր իմանա ինչի մասին խոսեր: Սակայն վախը անցավ, երբ հիշեց, որ Ալլիի հետ պարզապես կարելի է լռել:

Գնացքի ընթացքը դանդաղեց: Այդ նրանց կայարանն էր:

— Հիմար բան ստացվեց,— քմծիծաղեց գրեթե բեղիկավոր տղան: Բայց նրա ձայնի մեջ չկար նախկին կոպիտ գերազանցությունը: Նա կարծես, նույնիսկ ցավում էր, որ իրեն հարվածող տղայի հետ բանն այդպես վատ վերջացավ: Այնուամենայնիվ ինչ-որ բան նա հասկացավ, այդ տղան...

Վերադարձի գնացքը ուղևորվելու էր քառորդ ժամից: Լորան ասաց, որ կայարանից չի գնա մինչև Անդրեսին վագոն չնստեցնի:

Լորան Անդրեսի հետ մոտեցավ դրամարկղին, և Անդրեսը նրա ներկայությամբ տոմս գնեց: Նա տղային կարգադրեց գնացքից իջնելուն պես տուն գնալ, ոչ թե թրև գալ քաղաքում: Ապա տղային տվեց իր բուտերբրոդները:

Լեյդան ևս նրանց հետ մոտեցավ դրամարկղին և տոմս գնեց: Լորան Լեյդային ոչինչ չասաց, կարծես թե Լեյդան չէր պատրաստվում տուն վերադառնալ, կամ թե ինքը կարծես թե այդ աղջկան չէր ճանաչում:

Անդրեսը շարունակ լուռ էր: Նա առհասարակ շատախոս չէր, իսկ հիմա խոսելու ցանկություն բոլորովին չուներ: Նրանց ջոկատի հարցասեր տղաները իրենց հարցերին ոչ մի պատասխան չստացան նրանից: Առավել ևս՝ աղջիկները:

Անդրեսը շատ էր ափսոսում, որ էքսկուրսիան կորցրեց: Բայց մակաչափ չէր ափսոսում, որ պատահեց:

Զայրանում էր միայն, որ ավելի լավ բան չէր մըտածել, բայց և այնպես ոչ մի բանի համար չէր կըղջում: Ոչ մի բանի համար:

Հանկարծ Լեյդան դարձավ նրան ու ասաց.

— Չերևանկայես, խնդրեմ, թե ես հիանում եմ քեպանով կամ նման մի բան: Չէ՛ մի: Տանել չեմ կարող երբ ապատություն են տալիս ձեռքերին:

Անդրեսը չիմացավ ինչ պատասխանի՝ այն, ինչից որ վախենում էր:

Գնացքը մոտեցավ:

Ջոկատը կանգնել էր կառամատույցում, Լորան էլ՝ բոլորի առջև:

Անդրեսը աստիճաններով բարձրացավ վագոն: Լեյդան գնաց նրա ետևից: Այդ պահին բոլորը տեսան, որ Ալլին վազում է կառամատույցով: Ուսից կախված պայուսակը ճոճվում էր, ձեռքին բռնել էր դրամապանակը:

Նա վազեց Լորայի մոտ և ցածրաձայն ասաց.

— Ցտեսությո՛ւն, ես տուն եմ գնում: Ես իրավունք չունեմ այս էքսկուրսիային մասնակցելու: Արժանի չեմ:

Նրանք երեքով նստել էին վագոնում: Նստել էին լուռ: Նայում էին մեկը մյուսին, լուրջ էին, ոչ մեկը չէր փորձում խոսակցություն սկսել:

Նրանք լուռ կերան բուտերբրոդները:

Նրանք լուռ, մեկը մյուսին կոնֆետներ և թխվածք հյուրասիրեցին: Գուցե նրանք խոսելու բան չունեին: Գուցե նրանք, այդպես... Իսկ գուցե, բանն այն է, որ լռությունն է լինում ավելի պերճախոս, հենց այդպես էլ կար: Համենայն դեպս Անդրեսը չէր նեղվում, որ չի կարողանում կրույց վարել:





ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ՎԱՀԱԳՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ

— Գրատախտակին ո՞վ է մոտենալու,— ուսուցչուհին հայացքով ընդգրկեց դասարանը: Բարձրացավ ձեռքերի անտառը:

— Ե՛ս... ե՛ս...

— Ո՛չ... Ես ուզում եմ այսօր գրատախտակի մոտ տեսնել Սարգսին,— ասաց ուսուցչուհին:

Սարգիսը կծկվել էր վերջին նստարանին, գլուխը թաքցրել, որ աննկատ մնա:

— Վե՛ր կաց, Սարգի՛ս:

Նա անփույթ կանգնեց ու հենվեց պատին:

Արդեն ՛քառորդի վերջն էր, անցած երկու ամսվա ընթացքում ուսուցչուհուն չէր հաջողվել Սարգսից որևէ պատասխան կորզել:

— Ես քեզ եմ սպասում,— ուսուցչուհու ձայնի մեջ կուսպ պայքուլթ կար:

— Պատրաստ չեմ,— եղավ պատասխանը:

— Ի՞նչ արած, քո քառորդային գնահատականը կլինի «2»:

— «Երկու» չեք նշանակի,— քմծիծաղեց Սարգիսը:

— Ինչո՞ւ, կվախենա՞մ:

— Չէ՛, չեք վախենա... Պարտուս է, ստիպված կփոխեք գնահատականը:

— Ահա թե ի՞նչ: Դա՞ է քո կենքը:

— Բա ես ո՞նց եմ հասել 7-րդ դասարան:

— Ցավալի է, շատ ցավալի:

— Ես... Ես գամ գրատախտակի մոտ...— Հայկուշն անհամբեր ցատկոտեց տեղում:

Նա մոտեցավ գրատախտակին, գրեց նախադասությունը, լրացրեց բաց թողած տառերը, բացատրեց կանոնը, ապա նստեց տեղը: Նրանից հետո ևս մի քանի հոգի մոտեցան: Երկու գրատախտակներն էլ արդեն լցվել էին մանըր գրերով:

— Սարգի՛ս, գուցե հիմա՞ մոտենաս գրատախտակին,— նորից ընկեր հաչատրյանը դիմեց Սարգսին:

— Է՛, էլի Սարգիսը,— դժգոհեց Վարուժանը,— ես էլ եմ ուզում գալ:

— Էդ Սարգիսն էլ իո միայն ժամանակ է խլում,— դժգոհությամբ աչքերը նրա կողմը ոլորեց Գառնիկը:

— Ինչո՞ւ, ես մարդ չե՞մ: Հենց լավ էլ կգամ,— Սարգիսը նավաստու օրորուն քայլվածքով մոտեցավ գրատախտակին:

— Մաքրի՛ր գրատախտակը, — ասաց ուսուցչուհին: Սարգիսը վերցրեց բարձիկը և արագ-արագ մաքրեց գրատախտակը, ապա հարցական նայեց ուսուցչուհուն:

— Նստի՛ր, «երեք»:

— Ի՞նչ... Ինձ ողորմություն պետք չէ՛, «երկո՛ւ» դարձրեք,— բացականչեց Սարգիսը:

— Իսկ ինձ թվում է, որ քեզ հենց ողորմություն է պետք: Չէ՞ որ դու համոզված ես, որ ըստիպված կլինեմ քեզ «3» նշանակել: Դե, նշանակում եմ:

— Գրատախտակ մաքրելու համա՞ր:

— Ի՞նչ է, ուզում ես ոչինչ չանելու համա՞ր «3» ստանալ:

Սարգսի դեմքը լարումից կարմըրել էր, ռունգերը լայնացել էին:

— Ես կգնամ դիրեկտորին կասեմ...

— Որ քեզ «երեք» են ողորմացե՞լ:

— Ես մյուս դասին կգամ կըպատասխանեմ, հիմա թվանշան մի՛ դրեք,— հևալով ասաց Սարգիսը:

— Լա՛վ,— համաձայնեց ուսուցչուհին,— պատասխանելու դեպքում գուցե «4» կամ «5» ստանաս... Իսկ եթե դարձյալ գաս անպատրաստ, հույսդ դնելով հերթական ողորմության վրա... «երեքը» կա ու կա:

— Ո՛չ, չեմ ուզում:

— Տեսնենք՝, կուզե՞ս, թե՞ չես ուզի,— հանգիստ ժպտալով ասաց ուսուցչուհին:

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 7. ՎԵՐՍՏԻՆ ՔԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՕԳՈՒՏԻ ՄԱՍԻՆ

Կան աշակերտներ, որոնց քերականական կանոնները թվում են ձանձրալի: Նրանց համար գրականության դասն ավելի գրավիչ է, քան լեզվի դասը: Մինչդեռ քերականությունն էլ իր հրապույրն ունի: Հարկավոր է միայն, որ ամեն ոք իր համար հայտնաբերի և զգա այդ հրապույրը:

Վերջապես, առանց լեզվի իմացության ի՞նչ գրականություն:

Նշանավոր ճարտարապետ Ռաֆայել Իսրայելյանն իր հոդվածներից մեկում ճարտարապետությունը համեմատել է քերականության հետ. նրա համոզմամբ, ինչպես մայրենի լեզվի քերականություն իմացող մարդը չի կարող սխալ գրել կամ խոսել՝ որքան էլ օտար բառեր գործածի, ճիշտ այդպես էլ ազգային ճարտարապետության քերականությունն իմացող ճարտարապետը չի կարող սխալ կառուցել՝ որքան էլ օտարամուտ տարրեր օգտագործի շինության մեջ. «...ամենադժվարը հենց սա է՝ իմանալ քերականությունը, գիտենալ կառուցվածքը և երբեք չվախենալ օտար էլեմենտներից, այսինքն՝ բառերից»,— գրել է նա և որպես իր մտքի փայլուն վկայություն՝ օրինակ բերել Ալեքսանդր Թամանյանի նախագծով կառուցված Կառավարական տունը՝ ժամանակակից հայ ճար-

# ՕՊԵՐԱՑԻԱ «ՕՌԼՅՈՆՈԿ»

*ՋՈՐԻ ԲԱԼԱՅԱՆ*

Իշխանիկի հայրը ճարպոտ դեմքով, եռակի ծնոտով, ուզբեկական սեխի նման մեծ փորով ու նեղլիկ, թեք ուսերով մարդ էր: Հեռվից նայելիս նա շամպայնի փքթխարի շիշ էր հիշեցնում: Աշխատանքի էր գնում միայն ոտքով, նույնիսկ վատ եղանակին: Նրա կարծիքով քաղաքացիական տրանսպորտից օգտվողները անխելք մարդիկ են, որովհետև նախ առողջության համար վնասակար է, երկրորդ՝ փող ես ծախսում: Նա հաշվապահ էր և աշխատակիցները տարօրինակ կարճ անունով էին կոչում այդ տարեց, հաստափոր մարդուն՝ Վանիկ: Անձնագրով նա Վաչագան Նիկողոսովիչ էր, բայց աշխատակիցները գիտենալով նրա ամեն ինչ տնտեսելու հակումը, կրճատել էին անուն-հայրանունը: Վա-Նիկ, Վանիկ:

Վանիկի որդի Իշխանիկը, որ թունդ պեպենոտ ու բարալիկ տղա էր, բոլորովին նման չէր հորը: Իշխանիկը գաղափար չուներ տնտեսման մասին: Նա ամեն օր ծնողներից քսան կոպեկ էր ուզում պաղպաղակ գնելու համար: Պաղպաղակ շատ էր սիրում: Բայց երբ ամառը եկավ, պարզվեց, որ Իշխանիկը նաև հեծանիվ է սիրում:

— Հեծանիվն արժե քառասուն ութ ռուբլի,— որդու ցանկությունը լսելով ասաց հայրը:— Հաշվենք՝ հիսուն, որովհետև, համոզված եմ, անպայման մի որևէ տափոդակ պակաս է լինելու և ստիպված դա մասնավորից ենք գնելու: Երևանի կենտրոնում ձյունը նստած է լինում երեք ամիս: Մի երկու ամիս էլ անձրևներ կգան, դուրս է գալիս, որ հեծանիվը կօգտագործվի միայն կես տարի, թերևս ավելի պակաս: Այն էլ ոչ ամեն օր: Ինչ ասես որ չի պատահում՝ ամպրոպ, անգինա, վերելակի վերանորոգում, գրիպ, հենց հեծանիվի վերանորոգում... :

Իսկ որտե՞ղ պետք է դնեին հեծանիվը ձմռանը: Խոհանոցում տեղ չկար: Լոգարանում կժանգոտվեր: Միջանցքի մասին խոսք լինել չէր կարող, այսինքն, բո-

տարապետության պարծանքը:

Նույն միտքը մենք կարող ենք հաստատել լեզվից բերված օրինակներով: «Ո՛չ, ընկեր այսինչյանն իր մոտ չի».— շատ հաճախ լսում ենք հեռախոսով: Սա հայերեն չէ, թեև նախադասության բոլոր բառերը հայերեն են, սա ռուսերեն դարձվածքի անհաջող թարգմանությունն է, որով խոսողն ուզում է ասել, թե այսինչյանն իր սենյակում չէ, իր տեղում չէ: Մինչդեռ, հետևելով Դերենիկ Դեմիրճյանին, կարող ենք կրկնել, որ «Տրակտորների դետալները կոմպլեկտավորվեցին» նախադասությունը միանգամայն հայերեն է, թեև օգտագործված բոլոր բառերն օտարամուտ են: Միայն հայերեն իմացող մարդը կհասկանա դրա իմաստը:

Ուրեմն, կարևոր են ոչ այնքան բառերը, թեև, իհարկե, հայերեն համարժեքներն ունենալու դեպքում բնավ էլ պետք չէ օտար բառեր գործածել, որքան կառուցվածքը, այն շարահյուսությունը, որ հարազատ է մայրենի լեզվամտածողությանը, կարևոր է լեզվի ոգի՛ն, իսկ դա արտահայտվում է քերականության մեջ ու նրա միջոցով:

Քերականությունն, այսպիսով, մեզ սովորեցնում է ինչպես վարվել մեր իմացած անթիվ-անհամար բառերի, ուրիշ խոսքով՝ մեր բառապաշարի հետ: Հենց բառապաշարին էլ նվիրված կլինի մեր հաջորդ զրույցը:




լորին էլ հայտնի է, որ կթռցնեն: Իշխանիկը փախվխելով պնդեց.

Բայց չէ՞ որ խոսք ես տըվել, որ եթե հաջողությամբ ավարտես չորրորդ դասարանը, ապա...

Մի անգամ քեֆը տեղը ժամանակ նա իրոք խոստացավ: Եվ Իշխանիկն էլ, հակառակի պես չորրորդ դասարանը «հինգերով» փակեց:

Վանիկը միայն իր փափլիկ ափով խառնեց որդու մազերն ու, հանգիստ, առանց «էվրիկա» գոչելու ասաց.

Լավ, դուք հեծանիվ կունենաք,— նա հենց այդպես էլ ասաց՝ «դուք», որովհետև մայրը միշտ որդու կողմն էր պահում:— Միայն թե ինչներիդ է պետք մշտական հեծանիվը: Դու որ մեծանաս, հետո մանկական հեծանիվդ ի՞նչ անենք: Ավելի լավ է վերցնենք վարձով:

Իշխանիկը չգիտեր ինչ ասել է վարձով: Բայց նրա համար միևնույն էր, թե հայրն ինչ ձևով կբերեր հեծանիվը:

Շուռով Նորքի Չորրորդ զանգվածի խորդուբորդ փողոցներում, շողշողացնելով նիկելները, Իշխանիկը քշում էր «Օրլյոնոկ» հըպարտ անունով իր հեծանիվը: Երեկոները տանը խոսակցությունը հենց միայն այդ «Օրլյոնոկի» շուրջն էր լինում: Իշխանիկը սովորել էր հեծանիվը վարել ուզած ձևով, նույնիսկ սռնու վրա կանգնած, նույնիսկ թարս նստած: Մի քանի օրվա մեջ նա մի տեսակ առնականացավ, մինչև անգամ ամրապնդվեց, լրջացավ, իսկ դեմքի մուգ պեպեններն ասես գունաթափվեցին:

Մի օր Իշխանիկը նիկելապատ «Օրլյոնոկը» թողեց պատի տակ ու մտավ խանութ՝ պաղպաղակ գնելու: Եվ հետո իզուր էր հայվող սերուցքը կաթկթեցնելով վազվզում խանութի շուրջ: Հեծանիվը չկար: Իշխանիկը անփորձությունից անմիջապես չըհասկացավ իրադրությունը: Նա դեռ երկար ժամանակ չէր կարողանում հասկանալ, որ «Օրլյոնոկը» ինքն իրեն ոչ մի տեղ չէր գնա, պարզապես թռցրել էին:

Իշխանիկի հայրը, իմանալով այդ սարսափելի իրողությունը, սկսեց ուշադիր ուսումնասիրել «Վարձույթային» խանութի անդորրագիրը:

Վանիկը բարձրաձայն կարդում էր տեքստն ու ոչ մի կերպ չէր կարողանում ըմբռնել իմաստը: Իսկ անդորրագրում ասվում էր, որ վարձով վերցրած իրերը խանութին չվերադարձնելու դեպքում պարտավորվում են վճարել դրանց արժեքի եռապատիկը»: Ստացվում է 144 ռուբլի: Մի ամսվա աշխատավարձ: Ճա՜տ է:

— Կնի՛կ,— ջանալով հանգիստ երևալ, Վանիկը դիմեց տիկնոջը, որը իր համար տեղ չէր գտնում երկու սենյականոց բնակարանում, չհաշված փակ պատշգամբը:— Պետք է կանգահարել եղբորդ՝ Սեդրակին: Ինչքան չլինի միլիցիոներ է, գուցե օգնի: Հարյուր քառասունչորս ռուբլին փողոցից չենք գտել, մանավանդ տասնութն արդեն վճարված է:

Իշխանիկի քեռին՝ Սեդրակը, որ միլիցիայի ավագ էր, ավելի շուտ գնդի որդու նման մի բան, քան թե ժամանակակից միլի-

ցիոներ, հեռախոսով ասաց, որ դա շատ դժվար գործ է: Այնուամենայնիվ, խոստացավ մի բան մտածել, ծայրահեղ դեպքում, մաս-մաս մեկ ուրիշ հեծանիվ հավաքել. նրա համար, իբր, դա դատարկ բան է:

Շուտով քեռի Սեդրակը գործի անցավ: Վանիկը երկու շաբաթով արձակուրդ վերցրեց իր հաշվին: Նա այդ բանն արեց «Օլյոնոկ» օպերացիայի բարեհաջող իրագործման համար, որով, ի դեպ, զբաղված էին նաև քեռի Սեդրակի բարեկամ-կոլեգաները: Ամբողջ միլիցիան կոլեգիալության զգացումից մղված, հեծանվի մասեր էր հավաքում: Ամեն օր քեռի Սեդրակը հեռախոսով սիստեմատիկորեն Վանիկին հաղորդում էր օպերացիայի ընթացքի մասին:

Ժանգոտված մասերով հեծանիվը նման չէր սիրունիկ «Օլյոնոկին»: Ուրախ միլիցիոներներից մեկը այդ տարօրինակ մեքենան անվանեց «Անտիլոպ Գնու»:

Իշխանիկը հեծավ «Անտիլոպ Գնուն» և սեղմելով ժանգոտ ոտնակները, մոտենում էր Չորրորդ կանգվածին, աչքով անելով ճանապարհի երկարությամբ շարված մեծ ու փոքր հուշարձաններին: Չգիտես որտեղից, նրա ճանապարհը կտրեց տղաների մի խումբ: Իշխանիկը կանգ առավ, իջավ հեծանիվից, ցանկացավ ինչ-որ բան ասել, բայց հնարավորություն չտվին: Տղաներից ամենախոշորը չարությամբ հարցրեց.

— Որտեղի՞ց ես վերցրել այս դրանդուլետը:

Այդ հարցին հնարավոր չէր կարճ պատասխանել: Խումբը շրջապատեց «Անտիլոպին», սկըսեց շոշափել բազմագույն մասերը: Հանկարծ տղաներից մեկն այնպես գոռաց, ասես մեկը տաք կարտոֆիլ էր գցել նրա ծոցը: Բոլորը ցնցվեցին: Տղան բռնել էր մի ինչ-որ մասից և շնչահեղձ լինելով ապացուցում էր, որ դա իր հեծանիվինն է, որը դեռ անցյալ տարի են գողացել:

Իշխանիկը հիմար տղա չէր, ավելին, բացարձակ գերազանցիկ էր ու նրա համար բոլորովին դժվար չէր գնահատել իրադրությունը, որի մեջ ընկել էր: Երեխաներից բողոքելու տեղ չուներ: Նրանք ինչ-որ տեղ իրավացի էին: Միայն հեծանվի բանը վատ եղավ: Տղաները մաս-մաս արին ու տարան: Հիմա այդ ողբերգությունը ինչպե՞ս պիտի հայտնի ծնողներին: Մայրիկի բանը հեշտ է, նա կհասկանա: Իսկ հայրի՞կը...

Իսկ հայրիկը, որին այս զարմանալի աշխարհում հազվադեպ էր պատահում, որ որևէ բան զարմացներ, տուն մտնելով ապշեց: Առաջին անգամ էր այդ տանը նման բան կատարվում: Կինը անարգում էր հանճարեղ ամուսնուն աշխարհի տակ եղած դառը խոսքերով: Այնպիսի բառերով էր կոչում, որով պարգևատրել էին Վանիկին դեռևս մանուկ օրերին: էլ գծուծ, էլ պլյուշկին, էլ ժլատ, էլ կծծի, էլ անկուշտ, էլ ինչ ասես...

Կինը հանդիմանում էր ամուսնուն այն բանի համար, որ հենց մի փոքր առիթ է լինում, անմիջապես համրիչը ձեռքն է առնում ու սկսում հաշվել՝ շահավե՞տ է, թե՞ անշահավետ: Չէ՞ր կարող բոլոր նորմալ մարդկանց նման վերցնել ու գերազանցիկ որդու համար հեծանիվ գնել: Դրա համար էլ աստված պատժեց. ստիպված կլինի եռակի վճարել: Բայց փողերը գրողի ծոցը: Հապա որդու հոգեկան ապրումնե՞րը:

Վանիկը չէր պատասխանում կնոջը: Չգիտեր ինչպես վարվեր: Փորձ չուներ:

Առավոտյան կինն արթնացավ ու հառաչեց: Ամուսինը կողքին չէր: «Փախել է»,— անցավ նրա մտքով, ու նա կամացուկ հեծկլտաց, բերանը սեղմելով բարձին, որպեսզի չարթնացնի Իշխանիկին:

Այն ժամանակ, երբ կինն այսպես տանջվում էր, դեմքը թաքցնելով արցունքներից թացացած խոշոր բարձի մեջ, ամուսինը դուրս էր գալիս խնայդրամարկղից այնպիսի արտահայտությամբ, ասես դռան գլխին ոչ թե «խնայդրամարկղ» ցուցանակն էր կախված, այլ՝ «ատամնաբույժ»:

«Սպորտ» խանութում Վանիկը երկար ժամանակ «Օլյոնոկ» էր ջոկջկում: Չնայած դեմքի աղավաղված արտահայտությանը, տրամադրությունը բավական բարձր էր: Վերջապես ընտրեց մի հեծանիվ, որը մյուսներից ավելի շատ էր քսուքոտված: Բավականությամբ ու սրտի ցավով հիշեց, որ քիչ առաջ «Վարձութային» խանութին վճարեց 144 ռուբլի: Հեծանիվը ձեռքին դուրս եկավ արևով ու վաղորդյան թարմությամբ ողողված Աբովյան փողոցը ու վերջին տասնմեկ տարվա մեջ առաջին անգամ նստեց տաքսի:

Վանիկը «Օլյոնոկը» թողեց հարևանի տանը, որպեսզի մըտածի, թե ինչ ձևով մատուցի անակնկալը:

Հազիվ էր նա ոտքերը դըրել շեմին, երբ Իշխանիկը և արտասվելուց դեմքն ուռած կինը կախվեցին նրա վզից: Նրանք խոսում էին միաժամանակ, շընչակտուր ու բարձր: Վանիկը հազիվ էր առաջ շարժվում սենյակում, տանելով վզից կախված կնոջն ու որդուն, և ոչինչ չէր հասկանում:

Հանկարծ ջահը երերաց, ծեփը թափվեց, պատուհանները զնգզնգացին: Ոչ, դա երկրաշարժ չէր, Վանիկն էր քրքջում վզից չիջեցնելով թանկագին բեռը: Մարդու գլխում ծնվում էր կատակը, ինչպես նոր ատամը ծնվում է երեխայի բերանում: Պարզվեց, զանգահարել է ավագ Սեդրակը ու ասել, որ առևանգված «Օլյոնոկը», այնուամենայնիվ, գտնվել է:

# ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՎԵՆԵՏԻԿ



ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

## ԱՆԻՄԱՍՏ ՀԱՅԱՑՔՆԵՐՈՎ ՄԱՐԴԻԿ

— Ապակե կոթող, միակը աշխարհում,— հայտարարեց գիդը:

Մենք կանգնած էինք շվեդական մայրաքաղաքի մի բանուկ խաչմերուկում, որի հանգուցակետն էր իր ձևով և գույնով հսկայահասակ կակտուս հիշեցնող կոթողը: Կապտականաչ գույնը, ապակու թափանցիկությունը և շուրջը ցայտող շատրվանները յուրօրինակ պատկեր էին ստեղծում: Այդ հուշարձանը, ինչպես և շրջապատի հետաքրքրական կառույցները, բոլորովին չէին նախապատրաստել այն տեսարանին, որ քիչ հետո բացվելու էր մեր առաջ:

Ապակե կոթողը դիտելուց հետո մոտեցանք էսկալատորին և հենց այդտեղ լսեցինք լրացուցիչ բացատրությունը.

— Հիմա մենք կիջնենք փոքր հրապարակ, որը թմրամոլների[1] հավաքատեղին է: Այդ հրապարակի վրա բացվող մուտքերը տանում են դեպի ստորգետնյա հանրախանութի հարկաբաժինները և մետրոյի կայարանները (որտեղ և կատարվում է արգելված թմրադեղերի վաճառքը):

Այնուհետև շվեդուհի գիդը՝ Մարիա Գուստավսոնը, մտահոգ ասաց.

— Չարիք է, իսկական չարիք: Թմրադեղերի օգտագործումը շատերին է շարքից հանում: Այդ չարիքի դեմ պայքարում են, սակայն՝ արդյունքն առայժմ նկատելի չէ:

Թմրամոլների հավաքատեղի: Մութն ընկնելուն պես այստեղ սարսափելի մի «ներկայացում» է սկսվում: Գալիս են զույգերով, փոքր խմբերով: Օրորուն քայլվածքով և միմյանց հենված: Մենք ականատես եղանք, թե ինչպես ցռիվ մազերով ու կոճակները քանդած վերնաշապիկով երիտասարդ տղաներ ու աղջիկներ, մորթե փոսը թեատակերին՝ հարմար անկյուն էին փնտրում ուղղակի ասֆալտին տեղավորվելու համար:

Մեր աչքերի առաջ ահա թե ինչ տեղի ունեցավ:

Բարձրահասակ մի երիտասարդ սկսեց գոռալ: Նա թևերը չղաձիգ պարզել էր առաջ ու գլուխը ետ էր գցել և այնպիսի անմարդկային ձայներ էր հանում, որ լսողը փշաքաղվում էր: Մոտակայքում ոստիկանության և շտապ օգնության մեքենաներ էին կանգնած: Նրանց միջից դուրս եկան մարդիկ և վազեցին ինքնատիրապետումը կորցրածի կողմը: Երկուսը պատգարակը բացեցին, իսկ երրորդը՝ հանդարտեցնող ինչ-որ դեղանյութ փչեց երիտասարդի դեմքին: Այնուհետև նրան պառկեցրին պատգարակին և հատուկ փաթաթանով ուսերից սկսած մինչև ոտքերի ծայրը ամուր «բարուրեցին»: Այդ կերպ ասած՝ երիտասարդին կսպաշապիկ հագցրին: Մի ակնթարթ՝ և պատգարակը շտապ օգնության մեքենայի մեջ էր:

Չափազանց կարճատև այդ տեսարանը սարսափելի էր, ինչպես նաև դրան հաջորդածները: Անիմաստ դեմքեր, ապակե հայացքներ: Ամենաանտանելին, իհարկե, նրանց անմարդկային բղավոցներն էին, որ առաջանում էին գրգռվածության ու հոգեկան հավասարակշռությունը կորցնելու պատճառով:

Թմրադեղերի գործածությունն առաջին հերթին ազդում է մարդու ներվային համակարգի վրա: Այնուհետև, աստիճանաբար, խաթարվում են ներքին օրգանները: Մեծ մասը հոգեկան խանգարում է ստանում և մեկուսացվում հոգեբուժարանում:

— Չարիք է, իսկական չարիք,— դարձյալ կրկնում է Մարիա Գուստավսոնը:

Երկար ժամանակ մտածում էի, արժե՞, արդյոք, այս մասին պատմել պատանիներին: Ի վերջո եկա այն եզրակացության, որ, այո՛, արժե: Ավելին՝ անհրաժեշտ է: Չէ՞ որ չարամիտ մարդիկ ամենից շուտ իրենց թակարդը կարող են գցել դյուրահավատ պատանիներին: Նրանց, որոնք տեղյակ չեն, թե սխալի դեպքում ինչպիսի անդունդի եզրին են մոտենում: Մի քայլ՝ մի քանի անգամ թմրադեղերի օգտագործում, և մարդը կորցնում է հավասարակշռությունը: Իսկ դա նշանակում է գլորվել անդունդը, կորցնել հասարա-

---

Սկիզբը՝ №№ 9, 10

կության մեջ ապրելու իրավունքը, որովհետև խեղաթյուրված հոգով և քայքայված ներվային համակարգով մարդկանց շրջապատը չի հանդուրժում:

## ՈՒՐ ԱՐՁԱՆԱՑԵԼ Է... ՇԱՐԺՈՒՄԸ

Կարլ Միլլես (1885—1955): Շվեդ նշանավոր քանդակագործ: Կանցնի ժամանակ, և Ստոկհոլմի նրա տուն-թանգարանը իմ հիշողության մեջ կմնա իբրև առանձնահատուկ և անկրկնելի մի վայր, որտեղ արձանացել է... շարժումը: Վերարտադրել այն տպավորությունը, որ թողնում են Միլլեսի ստեղծագործությունները, դժվար է: Սակայն և չփորձել՝ նշանակում է մեղանչել ընթերցողների առաջ:

Դեռևս նախօրեին գիդն ասում էր, որ տեսնելու եք եզակի քանդակների մի հավաքածու: Եվ իրոք, այն, ինչ մենք տեսանք, վեր էր ամեն պատկերացումից: Բացօթյա այդ թանգարանում իրականն ու հեքիաթայինը միաձուլվել էին անթերի վարպետությամբ: Մարդիկ վազում էին: Մարդիկ ճախրում էին: Մարդիկ թռչում էին, սանձում դելֆինին, մեկը նվագում էր, իսկ մյուսները՝ խորասուզված լսում... Բրոնզաձույլ արձանները, մեծ մասամբ կուգակցված շատրվաններով, այնպես են լիցքավորված շարժման կրակով, որ երբ ընդառաջ ես գնում «Վազող տղաների» արձանախմբին, թվում է, թե իրենց հերթին նրանք էլ քեզ են ընդառաջ գալիս: Եվ այդ ժամանակ չափազանց տարօրինակ է հնչում գիդի բացատրությունը.

— Ամբողջ աշխարհն է նկարչի դեմ, երբ նա սկըսում է: Համենայն դեպս Միլլեսի հետ այդպես է պատահել:

Փարիզի քանդակագործական դպրոցն անցած երիտասարդի գլխում նկարների ու արձանների ինչ շքեղ պատկերասրահ էր: Սակայն մինչև կարողանար մտածածն իրականություն դարձնել, դժվարություններ շատ պետք է հաղթահարեր: Ամենից առաջ պետք է հաստատեր, որ քանդակագործության մեջ ինքը մուտք է գործում իր սեփական ոճով: Անկարևոր չէր նաև արվեստանոց ունենալու խնդիրը: Մեծ արվեստանոց, որտեղ կարողանար իր հղացումներն իրականացնել:

Տաղանդի ուժը և ժամանակը ապահովեցին Կարլ Միլլեսի հաղթանակը:

Այսօր Ստոկհոլմ ժամանած յուրաքանչյուր տուրիստ, որ մայր ցամաքից ուզում է լինի, վերադառնալիս իր հետ տանում է բրոնզաձույլ արձանների ներդաշնակ սիմֆոնիան:

Թանգարանում ուշադրություն է գրավում նախ և առաջ այն, որ քանդակագործն իր ստեղծագործությունները տեղադրել է արժեքավորելով բնական ռելիեֆը, առափնյա տափարակը, ժայռերը, բարձրավանդակը: Բարձունքի վրա տունն է և արվեստանոցը:

Միլլեսն աշխատանքի իր անփոփոխ կանոնն է ունեցել: Արձանը նախ ստեղծել է գիպսով: Այնուհետև ձուլել բրոնզից: Գիպսե օրինակը ջարդել է այն ժամանակ, երբ պատրաստ է եղել արձանի երկրորդ օրինակը: Քանդակներից մեկն իր սեփական հավաքածուի համար, իսկ մյուսը...



### Աշուն

ՆԱՆՍԵՆ ՄԻՐԶԱՅԵԼՅԱՆ

Հավքերը թռան երամ առ երամ,
Հասկերը դեղին փնջերով թռան,
Անփույթ հողմերով ամպերը եկան,
Լանջերը լեռան թրջելով թռան:
Եվ տերևները մերկացող ծառի
Զանգերի նման հնչելով թռան:
Մառախուղները եղնիկի դնչին
Գոլորշու ամպեր փչելով թռան:
Քարերն ասացին՝ ինչո՞ւ են թռչում,
Թևավորները խռոված հո չե՞ն:
Սարերն ասացին՝ թռչում են, թռչում,
Անցվոր են նրանք ու պիտի թռչեն:

### Ա Ր Ա

ԳԵՎՈՐԳ ԽԱՋԱ

Արևածագից մինչև Արագած
Ճառագայթներն են ձգվում արևի,
Որոնք լարերով իրենց շիկացած
Գոյության հիմնն են ձոնում հիրավի...

Ո՜վ իմ Արագած, ամեն առավոտ
Լարում ես այդպես ջնարն արևի,
Որ իմ Հայաստան աշխարհը քարոտ
Խնդության իր նոր երգերն արարի...

Այսօր Շվեդիայի տարբեր քաղաքների պուրակներն ու փողոցները զարդարում են Միլլեսի ստեղծագործությունները: Օրինակ, նշանավոր «Պոսեյդոնի» կրկնօրինակը մենք տեսանք Գյոտեբորգ քաղաքի կերպարվեստի թանգարանի դիմաց: Ծովերի հաղթահասակ արքան մի ձեռքով բարձրացրել է հսկա խեցին, մյուսով բռնել է ձուկը: Ձկան բերանից ցայտող շատրվանը և խեցիից սահող ջրի շղարշը արձանի անբաժանելի մասերն էին:

«Հրեշտակները երաժշտություն են լսում». բարձր պատվանդանների վրա, որոնք մի քանի մետրանոց գրանիտե սյուներ են, ոտքի ծայրերին թեթևորեն կանգնած և ողջ էությամբ ուշադրություն դարձած բրոնզաձույլ պատանիները լսում են կախարդական արնգահարին:

«Մարդը և մոլորակը». Արարիչն ստեղծել է մարդուն և դնելով ափի վրա, ցույց է տալիս Երկիր մոլորակը: «Նայի՛ր,— ասում է,— նայի՛ր, ի՛նչ գեղեցիկ է բնությունը: Քեզնից է կախված, թե այսուհետև ինչ տեսք կունենա»:

Բարձր պատվանդաններ: Առաջին պահին անհասկանալի է թվում: Ինչո՞ւ են որոշ արձաններ այսքան բարձր պատվանդանների վրա դրված: Սակայն մի փոքր դիտելուց հետո նկատում ես, որ գրանիտե բարձրադիր սյուներով գետնից կտրված մարդկային ֆիգուրները, որոնց համար ֆոն են դառնում երբեմն երկնի կապույտը, երբեմն ջուրը, ծառերը, քաղաքի համայնապատկերը, նայած որ դիրքից ես դիտում, բացահայտում են քանդակագործի «գաղտնիքները»՝ մարդու մարմնի ներդաշնակությունը, ճկունությունը և բնությունից իբրև պարգև ստացած կյանքի ամենամեծ գրավականը՝ շարժումը:



Միլլես քանդակագործը նաև լավ մաթեմատիկոս է եղել: Մաթեմատիկայի իմացությունը ապահովել է ամենաֆանտաստիկ դիրքերում գտնվող նրա քանդակների հավասարակշռությունը: Վառ երևակայությունը և անառարկելի տաղանդը այդպես չէին դրսևորվի, եթե դրան չմիանային մաթեմատիկայի և մարդու կազմության նրա անթերի իմացությունը: Կարծես ավելի հասկանալի է դառնում փոքր առանձնասենյակի գոյությունը, որ դիտեցինք քիչ առաջ: Այնտեղ Միլլեսը փակվել է այն ժամանակ, երբ գլխում նոր միտք է ծագել: Մարդկանց ներկայությունն ազդում էր նրա վրա: Չէ՞ որ լույս աշխարհ բերելուց առաջ ինչպես հարկն է պետք էր քննարկել կարմանահրաշ իր ստեղծագործություններից մեկնումեկի մանրամասները:

*(Շարունակելի)*







# Գ Ա Ծ

Դու, Արագած, այմաստ վահան
Կայծակներն թրերի...

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ

Ոչ ոք չի կարող մեզ նման զգալ
«Առավոտ լուսոն», «Արեգակն արդար»,
Դո՛ւ, իմ Արագա՛ծ, իմ արևագա՛լ,
Առանց քեզ ես ինձ կզգայի օտար...

Ուրեմն՝ օրհնվա՛ծ քո սեգ գագաթին,
Ուր արեգակն իր քնարն է լարում.—
Դու մի հրաշք ես աղամամութին,
Ուր ձյունն իր ճերմակ խարույկն է վառում...

Նկ. ՍԱՐՈ ՍԱՀԱԿՅԱՆԻ

# Երեկո

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Ստվերները ծառերի
Երկարել են այնքան,
Որ այգուց դուրս են եկել
Ու հատել են ճամփան:

Այդ ինչպե՞ս է, որ միայն
Այգում է միրգը ընկել,
Ստվերների հետ մի՞թե
Ծառերը չեն երկարել:

# ՎԻՐԱՎՈՐԱՆՔ

Աստղիկը հուզված եռ ու առաջ էր քայլում միջանցքում: Ճանաչում էի, գիտեի, որ խելոք աղջիկ է, լավ սովորող: Ի՞նչը կարող էր հուզմունքի պատճառ դառնալ: Զրուցեցի հետը: Պարզվեց, որ չգիտի, թե որտեղ նստի: Առաջին դասարանից սկսած՝ նստել է Արմենի կողքին, իսկ հիմա, ականջին չարախոսություններ են հասել, որը և նրան թույլ չի տալիս նույն տեղը նստել: Ինչպե՞ս վարվել, ինքն ու Արմենը լավ ընկերներ են: Առհասարակ դադարեցնե՞լ ընկերությունը: Ինչո՞ւ:

Աղջիկը ազատություն է տալիս արցունքներին:

Ծանոթ լինելով աշակերտական կյանքին, գիտեի, որ միայն այդ դպրոցում ու դասարանում չէ, որ ընկերությունը ոմանց չարախոսելու տեղիք է տալիս և ստվեր նետում դասընկերների լավ փոխհարաբերությունների վրա: Որոշեցի խոսել Աստղիկի համադասարանցիների հետ, լսել նաև իրենց կարծիքը ընդհանրապես տղայի ու աղջկա ընկերության շուրջը:

— Դե, ինչպե՞ս ասել,— երկար լռելուց հետո խոսեց Գայանեն,— ես շատ կուզենայի տղաների հետ նույնպես ընկերություն անել, նրանք աղջիկների նկատմամբ ավելի, քան միմյանց նկատմամբ, զուսպ են, սիրալիր: Նրանք չեն չարախոսում, գրեթե չեն նախանձում, իրենց խոսքի տերն են:

— Իսկ ինչո՞ւ ընկերություն չես անում:

— Եթե աղջիկն ու տղան մտերիմ են լինում, բամբասում են, դրա համար էլ ավելի լավ է հեռու մնալ:

Այնուհետև դիմեցի Աստղիկի ու Արմենի դասղեկին: «Երկուսն էլ հիանալի ընկերներ են,— ասաց նա,— լավ սովորող, կարգապահ: Ուր էր թե բոլորը Աստղիկի ու Արմենի պես լինեին...»

Դիմեցի այն աղջկան, որին դասընկերները մատնացույց արեցին իբրև բամբասկոտի: Նրան կպցրել էին «Չանթա» մականունը: Աննան սկզբում շատ համարձակ էր պատասխանում հարցերիս, խորամանկորեն ժպտում էր՝ փայլեցնելով աչքերը, ձգտում էր սև գույներով ներկայացնել Աստղիկին ու Արմենին:

— Իսկ դու չէի՞ր ցանկանա, որ տղաները քեզ հետ էլ ընկերություն անեին:

Նա մի պահ շփոթվեց, ես նրա դեմքին կարդացի չասված պատասխանը՝ շատ կուզենայի:

— Իսկ ինչո՞ւ ընկերություն չես անում:

Նա լռեց, չուզեց կամ չիմացավ ինչ ասել:

Հարցուփորձ անելով, ես իմացա, որ տղաները նրա հետ ընկերություն չեն անում, խուսափում են նրանից, չարախոսելու և բամբասկոտության համար: Եթե Աննան վերջ տա դրան, դասընկերների նկատմամբ զգայուն և սրտացավ լինի, ինչո՞ւ չէ, նրա հետ նույնպես ընկերություն կանեն: Եվ այդ դեպքում արդեն ուրիշների սովորական ընկերությունը նա ծուռ չի դիտի և վիրավորանքի արցունքներ չեն թափվի:

*ՌՈՒԶԱՆՆԱ ԵՐԻՑՅԱՆ*

# ՇՐՋԱՆԱՎԱՐՏ ՈՐԴԻՆԵՐՆ ՈՒ ՀԱՅՐԵՐԸ

Մենք արդեն դպրոցի առաջին հարկում դիտում էինք Վարուժան Հարությունյանի անհատական ցուցահանդեսը՝ «Հոկտեմբերը և հայ ժողովուրդը» թեմայով, երբ իմացանք, որ հեղինակը բոլորի հետ այդ օրը մասնակցում է ավարտական քննություններին: Առաջին քննությունը շարադրություն էր, որի թեմաները դեռևս հայտնի չէին, բայց ուր որ էր պիտի ռադիոն հայտարարեր, դրա համար էլ բոլորը լարված սպասման մեջ էին: Ասենք, ոչ բոլորը: Մի քանիսը փառավոր հանգստությամբ էին սպասում այդ հայտարարությանը, քանի որ վստահ էին, ինչ էլ լինի, միևնույնն է, ուսուցիչները կես ճամփին չեն թողնի իրենց, մի կերպ ավարտել կտան դպրոցը:

Նրանցից ոչ պակաս հանգիստ էին երևում Վարուժանն ու էլի մի քանիսը: Սկզբում կարծեցինք, թե Վարուժանին հանգստություն է բերել մարզական մեծ հաջողությունը. քննություններից մի քանի ամիս առաջ Բելոռուսիայի Գոմել քաղաքում նա նվաճել էր Սովետական Միության չեմպիոնի կոչումը՝ պատանեկան ըմբշամարտի առաջնությունում: Շնորհալի նկարիչ է, դպրոցն էլ չավարտած՝ արդեն չեմպիոն է: Մի խոսքով, հուզվելու պատճառ չունի: Բայց ո՛չ, նրա հանգստությունն այլ պատճառ ունի: Պարզվեց, որ Վարուժանը նաև հարվածային է. միայն մի առարկայից «չորս» ունի, մնացածը՝ «հինգ» է: Այն, որ ունեցած հաջողություններից նա գլխապտույտի մեջ չի ընկել, շատ բան է ասում նրա մասին: Այս նույն՝

# ԾԻՏԻԿԻ ՃԿԿՈՑԸ

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*

Աշնան անտառ՝ հազար գույնի,
Հազար գույնի ծառ ու տերև,
Ցածում՝ աշնան ծովն անհունի,
Աշնան գորգը՝ գլխի վերև:
— Ճը՛կ-ճը՛կ,— ծիտը ճըկկացրեց,
Եվ ճըկկոցը գետակն ընկավ,
Ալիքի հետ խորքը գնաց,
Ալիքի հետ երես եկավ,

Ջկների հետ խաղաց ջրում,
Ջրի խորքում գնաց մրսեց,
Հետո ելավ ջրի երես,
Շողքը սառած դեմքին քսեց:
Հետո գնա՜ց, հետո գնա՜ց,
Մարգարիտներ գտավ ջրում,
Տեսավ, թե ջուրն ավազներին
Ի՜նչ անուշիկ երգ է գրում:

Հետո գնա՜ց, հետո գնա՜ց,
Այդպես գնաց աշնան միջով,
Գնաց հասավ մինչև զարուն
Եվ թպրտաց զարնան հիշով:
Եվ ճչաց ու ծաղիկ դառավ
Միրաններու մատաղ ճյուղին,
Միտն անտեղյակ եկավ նստեց,
Պատմեց ծաղկին անցած ուղին,
Եվ զարմացավ ծիտիկը խեղճ,
Որ մի ծաղիկ՝ անշարժ նստած,
Այդքան սիրուն բաներ գիտի.—
Ճըկկացրեց ու ճռճռաց:
Եվ ճկկոցներր ծիտիկի,
Ջրերի մեջ լող են տալիս,
Որ ծաղիկներ դառնան կրկին,
Երբ որ կրկին լինի մայիս:

№ 146 դպրոցում է սովորում Նելլին, որը Սովետական Միության տասներեք միլիոնից ավելի բարձր դասարանցիների հետ մասնակցելով համամիութենական «Մեր կենսագրությունը» թեմայով շարադրությունների մրցույթին, առաջին տեղը գրավեց: Նելլին նույնպես, բոլորի հետ, բայց ոչ նույն անհանգստությամբ, սպասում է թեմաների հայտարարվելուն:

Ավարտական դահլիճից դասարան անցնելիս, դպրոցի դիրեկտոր ընկեր Կոստանյանի դեմքին առեղծվածային ժպիտ էր խաղում: Հանելուկի պատասխանը իմացվեց գրադարանության առանձնասենյակի դուռը բացելուն պես. այստեղ աշակերտական նստարաններին նստած էին հայրիկներ ու մայրիկներ, տատիկներ ու պապիկներ: Նրանք տասը, քսան, երեսուն տարի առաջ թողել են դպրոցը, բայց տարբեր առիթներով կցացել միջնակարգ կրթության պակասը:

Այդ տարեց մարդիկ ժամանակին չեն ավարտել դպրոցը, բայց դրա անհրաժեշտությունն զգալով, հարկադրված նորից են եկել, նստել իրենց երեխաների ու թոռների հասակակիցների հետ, նույնքան տագնապով սպասում են քննությունների սկսվելուն:

Դա ծանր ու տխուր պատկեր էր:

Այդ ուշացած ճամփորդները հանկարծ ինչո՞ւ էին հիշել դպրոցը:

Լսենք նրանց խոստովանությունները.

Հ. Կ. — Արտադրության մեջ աշխատանքի անցնելուց հետո, ես կցում էի, որ սոսկ տառաճանաչությամբ հնարավոր չէ անգամ փականագործություն անել: Մեր օրերում, երբ գիտությունը առաջ է գնում հսկայաքայլ, այսօրվա փականագործին գծագրերով, նուրբ հաշվարկներով պատվերներ են տալիս: Բարեխիղճ աշխատանքի, գործիմացության համար իմ հիմնարկի ղեկավարները միշտ մտածել են առաջ՝ քաշել ինձ, բայց ես վախեցել եմ պատասխանատու աշխատանք ստանձնել, որովհետև կրթություն չունենալու պատճառով ամեն քայլափոխի կարող եմ ծիծաղելի դրության մեջ ընկնել:

Վ. Վ. — Շինարար եմ, սիրում եմ կառուցել: Բայց մանկական տարիներիս թեթևամտության պատճառով մասնագիտական կրթություն չեմ ստացել: Ասում են. «Լավ է ուշ, քան՝ երբեք», թերին լրացնում եմ, այսպես կպրկվեմ իմ սիրելի գործը կատարելու հնարավորությունից:

Հ. Գ. — Թվում էր, թե ըժգոհելու ոչինչ չունեի և երջանիկ պիտի զգայի ինձ: Առանց միջնակարգ կրթության բավականին մեծ հաջողության էի հասել: Նույնիսկ բարձրագույն կրթությամբ շատ մասնագետներ նման հաջողության դժվարությամբ են հասնում: Սակայն եկավ մի տեղ, որ տեսա, չէ՜, այսպես շարունակել չի կարելի: Թեև ինձ համար հիմա տասնապատիկ դժվար է իմ երեխաների հասակակիցների հետ քննություն հանձնել, բայց դա ես սիրով հանձն եմ առել, որպեսզի այսուհետև հանգիստ խղճով աշխատեմ:

Այդ քննությունից հետո պարզվեց, որ մի քանիսը չեն կարողացել բավարար գնահատականներ ըստանալ: Այո, միայն ցանկությունը քիչ էր, պահանջվում էր նաև հիշողություն, երեսուն, քառասուն, հիսուն տարեկան հասակում դա այնքան էլ հեշտ չէ: Այս էքստեռն դասարանի գոյությունը դաս պիտի լինի այսօրվա դպրոցականներից նրանց համար, ովքեր մասների արանքով են նայում ուսման գործին:

*ՎԱՉԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

Հունան Ավետիսյանի անվան աջքեային ջոկատի մի խումբ պիոներներս մեկնեցինք 89–րդ փառապանծ դիվիզիայի հետքերով, տեսնելու այն պատմական վայրերը, որտեղ հայ մարտիկները հերոսական սխրանքով պսակեցին իրենց անունը:

Գնացքով մեկօրյա ճանապարհի կտրելով, վաղ առավոտյան հասանք Տուապսե: Ավտոյով շրջագայեցինք այդ ծովափնյա գողտրիկ քաղաքում և այնուհետև շարունակեցինք ճանապարհը մինչև Նովոռոսիյսկ, որի համար ընկել էր քաջորդի Հունան Ավետիսյանը:

Մեզ ջերմագին ընդունեցին կոմսոմոլի շրջկոմում, ուր պիոներների պալատի դիրեկտոր ընկ. Զոյա Դըմիտրիենան պատմեց իրենց աշխատանքների մասին, ապա ուղեկցեց № 6 դպրոցը: Այստեղ տոնական օր էր՝ մասնակցեցինք 8-րդ դասարանցիների ավարտական երեկոյին:

Հետևյալ օրը ծանոթացանք քաղաքի պատմական տեսարժան վայրերին, իսկ հունիսի 15-ին, ժամը 12-ին ավտոբուսով մեկնեցինք Մալայա Զեմլյա, Դոլգայա լեռը, որը գրավելու համար մղված մարտերի ժամանակ Հունանը կրծքով փակեց հրակնատի փողաբերանը և ճանապարհ բացեց յուրայինների առաջ:

Մեզ պատմեցին, թե ինչպես 1962 թվականին՝ գյուղի 100-ամյակի տոնակատարության օրը, հերոսի աճյունը Դոլգայա լեռից տեղափոխում են գյուղ՝ Վերխնի Բականսկ: Դպրոցի ծառախիտ բակում կանգնեցրել են հերոսի հուշարձանը, պիոներներն ամեն օր թարմ ծաղիկներ են դնում հուշարձանին:

# Այց հերոսի շիրմին

Մեր տարած հայրենի թարմ մեխակներն ու հովտաշուշանները դնում ենք շիրիմին, հինգ րոպե լռությամբ պատվո պահակ են կանգնում մեր դպրոցի դրուժինայի խորհրդի նախագահ Արթուրը, Ալլան, Ալեքսանը, Գևորգը:

Մենք երդվում ենք հերոսի հուշարձանի մոտ՝ էլ ավելի լավ սովորել, նրա նման սիրել հայրենիքը, պայքարել հանուն խաղաղության, որպեսզի աշխարհում երբեք պատերազմներ չլինեն: Էքսկուրսավարը հուզված պատմեց Մեծ հայրենականի ահեղ օրերի մասին, նկարագրեց տեղի ունեցած արյունահեղ մարտերից դրվագներ:



Հերոսի գերեզմանի պատվանդանի վրա գրված է.

«Այստեղ թաղված են Սովետական Միության հերոս, ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը, Սարգիս Սահակյանը, Պետրոս Եղոյանը, Վասիլ Սախանյանը, Զավեն Գևորգյանը, որոնք ընկան հանուն Վերին Բականսկ ռուսական գյուղի ազատագրության. 16/9—43 թ.»:

Վերին Բականսկում մենք ծանոթացանք պատերազմի վետերան, ֆաշիստների զավթողությունների վկա Եվդոկիյա Պոլիկարպովնայի հետ:

Հրաժեշտ տալով Մալայա Զեմլյային և Նովոռոսիյսկին, մենք մեր ճամփորդությունը շարունակեցինք ծովափնյա քաղաքներով և Թբիլիսիով վերադարձանք Երևան:

Ստացած հարուստ տպավորությունների, անմոռանալի ջերմ հանդիպումների համար շնորհակալ էինք մեր սիրելի դասղեկ ընկ. Մ. Հովհաննիսյանից, որի օգնությամբ իրականացրինք մեր այս շատ հետաքրքիր և արդյունավետ ճանապարհորդությունը:

*Ջոկատի հանձնարարությամբ՝*

ԳՈՀԱՐ, ԱԼԼԱ, ԱՆՆԱ, ԳԵՎՈՐԳ, ԱՐԹՈՒՐ
Հոկտեմբերյան, № 6 միջն. դպրոց



# ԴԻՐԻԺՈՐԻ ՓԱՅՏԻԿԸ

*ԿԱՌԼԱ ՍՏԱՄՊԱ*

Ոմանք դիրիժորին անհասկանալի, նույնիսկ ավելորդ մարդ են համարում: Հասարակությունը նրան տեսնում է մեջքից, հետևելով նրա ամեն շարժմանը, ձեռքերի թափահարումներին, որոնք երբեմն կարուսել են հիշեցնում: Եվ ինչո՞ւ է նա այդքան տաքանում: Արդյոք դա դատարկ ձևականություն չէ՞ կամ հասարակության վրա ամեն գնով տպավորություն գործելու մնապարծ ցանկություն: Նման կասկածները հաճախ են համակում անտեղյակ ունկնդիրներին, սակայն նրանք էլ, ի վերջո, բուռն կերպով ծափահարում են դիրիժորին: Ի՞նչն է ստիպում նրան կանգնել դիրիժորական նոտակալի մոտ ու կատաղի թափահարել ձեռքերը, այն ժամանակ, երբ նվագախմբի երաժիշտները, լռություն և ուշադրություն դարձած, որսում են նրա ամեն շարժումը, հետևում դիմախաղին,— այդպես էլ գաղտնիք է մնում այդ մարդկանց համար: Եկեք փորձենք հասկանալ, թե ինչ է նշանակում դիրիժոր լինելը:

Երաժշտության հայտնի դասատու մաեստրո Ֆերրարան ասում է, որ դիրիժորը պարտիտուրայի՝ կոմպոզիտորի կողմից նոտանիշերի օգնությամբ թղթի վրա գրի առնված երաժշտության, մեկնաբանն է, մեկնաբանը նրա, ինչը որ կոմպոզիտորը ուզեցել է արտահայտել: Գործիքայիններն էլ են երաժշտությունը մեկնաբանում, բայց ամեն մեկը յուրովի: Չէ՞ որ ամեն երաժիշտ իր ոճն ունի, կատարման իր եղանակը, ամեն մեկն ունի ընկալման տարբեր աստիճան, ունի իր տեխնիկան... Երաժշտական տերմինները՝ պիանիսսիմո, ֆորտե, ադաջիո, անդանտե, կարելի է հազար ձևով մեկնաբանել: Ուրեմն, ինչպե՞ս հասնել միասնական ինտերպրետացիայի, այսինքն, գործիքների հնչողության համարյա դեղագործական հավասարակշռության: Եվ հենց այստեղ է, որ օգնության է գալիս դիրիժորը, որը պարտավոր է պարզ ու համոզիչ կերպով հաղորդել կատարողներին իր գեղագիտական նպատակները, իր մեկնաբանումը:

Սկսենք դիրիժորական փայտիկից: Նրա պատմությունը նույնպես շատ հետաքրքիր է: Բազմաձայն երգեցողության ու նվագախմբային նվագի զարգացման հետ XV դարի առաջին կեսին ծագում է բատուտայի (փայտիկի) օգնությամբ ղեկավարելու ձևը, որի ժամանակ դիրիժորի խնդիրը տակտ խփելն էր:

XVII—XVIII դարերում դիրիժորությունն իրականացնում էր կլավեսինի կամ երգեհոնի վրա գեներալ-բասի պարտիան կատարող երաժիշտը: XVIII դարի երկրորդ կեսից դիրիժորություն էր անում առաջին ջութակահարը՝ կոնցերտմեյստերը, որը նվագում էր անսամբլում ու միաժամանակ ղեկավարում այն: Այդ պրակտիկան գոյություն ուներ նաև XIX դարում: Սակայն սիմֆոնիկ երաժշտության լայն զարգացումը, նվագախմբի կազմի մեծացումն ու բարդացումը, նվագախմբային նըվագի դինամիկ ու գունագեղ արտահայտչականության հարստացումը պայմանավորեցին դիրիժորի նոր տիպի՝ արվեստագետի, երաժշտության կատարողի, կոմպոզիտորի և ունկնդրի միջնորդի, ձևավորումը: Դիրիժորության նոր ձևի վերջնական հաստատումը տեղի է ունեցել XIX դարի քառասունական թվերին: Ժամանակակից դիրիժորը, փայտիկն աջ ձեռքում, կանգնած է նոտակալի մոտ (Ռիխարդ Վագների ժամանակներից սկսած՝ մեջքով դեպի հասարակությունը, սկզբնական շըրջանում՝ դեմքով դեպի նա): Նրա ձախ ձեռքն էլ անգործության չի

մատնված, օգնում է ընդգծելու երաժշտական ֆրազի նրբագույն երանգները, մեղմում է կամ խլացնում նվագախմբի հնչողությունը: Բայց մի՞թե սա է բոլորը: Չէ՞ որ այդ դեպքում կարելի կլիներ բավարարվել մետրոնոմով (ժամանակի տակտային չափերը հաշվող սարք): Թիկ-թակ, թիկ-թակ... և նվագախումբը կնվագեր առանց դիրիժորի: Սակայն դիրիժորի դերը այն չէ միայն, որ հաշվի տակտային չափերը, հաստատելով կատարման ճշգրիտ տեմպը: Նա պետք է զգայուն հոգեբան լինի, պահանջկոտ ու կամային ղեկավար, մի խոսքով, բարի, բայց խստապահանջ դաստիարակ: Նա պետք է օժտված լինի բարձր երաժշտական ձիրքով՝ նուրբ լսողությամբ, ձևի, ռիթմի զգացողությամբ, երաժշտական հիշողությամբ, ամեն տեսակ պարտիտուրայում արագ կողմնորոշվելու ունակությամբ: Ամերիկյան հռչակավոր դիրիժոր Լեոնարդ Բեռնստայնը դիրիժորին համեմատում է քանդակագործի հետ, որը քանդակում է ոչ թե մարմարի մեջ, այլ՝ ժամանակի:

Դիրիժորի պարտիտուրը տարբերվում է նվագախմբի առանձին երաժիշտների պարտիտուրներից, քանի որ ներկայացնում է բազմաձայն երաժշտական ստեղծագործության նոտագրություն, ուր առկա են բոլոր առանձին գործիքների պարտիաները: Դիրիժորը միաժամանակ կարդում է և՛ ուղղահայաց, և՛ հորիզոնական ուղղություններով, մի հայացքով ընդգրկելով կարևորը:

Մեր ժամանակներում հաճախ ղեկավարում են անգիր: Դա մեծ ազատություն է տալիս երաժշտական երկի մեկնաբանման մեջ, հնարավորություն տալիս նվագախմբի հետ ավելի անմիջական կոնտակտի ստեղծմանը: Այդ դեպքում դիրիժորը պարտավոր է անթերի իմանալ երկը նրա բոլոր նրբություններով ու երանգներով: Նա ոչինչ չպետք է բաց թողնի, չպետք է թույլ տա ոչ մի արտիստական ինքնակամություն կամ բնագրի աղավաղում: «Ամենից առաջ պետք է հարազատ մնալ տեքստին,— ասում էր հռչակավոր դիրիժորներից մեկը՝ Արթուրո Տոսկանինին (1867—1957),— երաժշտի տրամադրության տակ միայն նոտաներ են, և նա՛ պետք է բացարձակապես ճշգրիտ ու ազնիվ լինի»: Բայց միայն ազնվությունը քիչ է, և իզուր չէր Տոսկանինին ավելացնում, որ դիրիժորը պետք է զգա երաժշտությունը, գիտենա կոմպոզիտորի ճաշակն ու տեմպերամենտը: Ինքը Տոսկանինին աչքի էր ընկնում երաժշտական բացառիկ հիշողությամբ և հաճախ չէր օգտըվում պարտիտուրից, բայց նրա ունկնդիրները համոզված էին, որ նա երբեք չի դավաճանի հեղինակին:

Դիրիժորի աշխատանքի մեջ պատասխանատու պահ է փորձը՝ ռեպետիցիան: Սովորաբար դրանք լինում են չորսից ոչ պակաս, յուրաքանչյուրը երկուս ու կես ժամ տևողությամբ: Բայց և՛ փորձերի թիվը, և՛ նրանց տևողությունը կախված են դիրիժորից: Փորձի նպատակը «հող տնտղելն» է, յուրաքանչյուր երաժշտի հնարավորությունների բացահայտումը, երաժշտության բոլորի համար միասնական մեկնաբանմանը ձեռք վարկելը: Ծնվում է նվագախումբ-դիրիժոր միասնությունը: Աննկատելիորեն անցնում է ժամանակը: Հոբոյը մի փոքր ցրված է, տավիղի լարն է կտրվել, ալտն ավելի ուժեղ է հնչում, քան պետք է, կոնտրաբասը հոյակապ է, բայց... Իսկ ի՞նչ է ներկայացնում իրենից դիրիժորական նոտակալի մոտ կանգնած մարդը՝ համակրելի՞ է, թե՞ անհամակրելի, տիրակա՞ն է, թե՞ անվճռական, զգայո՞ւն է, թե՞ քմահաճ: Կանցնի մեկ-երկու ժամ, և ամենատարբեր դեմքերից, գործիքներից ու նոտաներից կազմված փոքրիկ տիեզերքը կմնա ինքն իր հետ: Եվ կատարվում է հրաշքը՝ նվագախումբը գտնում է իրեն:

Արդյոք, հնարավո՞ր է նման հրաշքն առանց դիրիժորի: Այդպիսի փորձ կատարվել է 1922-ին: Ելնում էին այն բանից, որ ամեն երաժիշտ անկախ անձնավորություն է, բայց բոլորն էլ պատասխանատվության զգացում ունեն: Փորձն անհաջողության մատնըվեց: Պարզվեց, որ մի երաժշտի բնավորությունն ավելի անկախ է, քան մյուսինը, և որ յուրօրինակ հենակետ ներկայացնող մարդու առկայությունն ուղղակի անհրաժեշտ է:

Եվ ահա, բեմ է դուրս գալիս սև ֆրակավոր մարդը: Գլուխ տալիս հասարակությանը, գրկախառնություն խորհրդանշող շարժում անում նվագախմբին: Լիակատար լռություն է տիրում: Մեկ, երկու, երեք: Հորդում է երաժշտությունը: Սիմֆոնիկ համերգն սկսվեց:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*




# Հովհաննես Ադամյան

## (1879—1932)

Մեր առօրյան դժվար է այժմ պատկերացնել առանց հեռուստացույցի: Այնքան ենք ընտելացել նրա գոյությանը, որ շատերս չենք էլ մտածում, թե երբ, ինչպես և ով ստեղծեց տեխնիկայի այդ հրաշքը:

Շարժվող պատկերը նույնությամբ և այն էլ իր բնական գույներով տեսնել, նույնիսկ հազարավոր կիլոմետրերի հեռավորությունից, իրոք որ հրաշք է:

Հեռավորության վրա պատկերներ հաղորդելու գաղափարի իրագործման առաջին փորձերը կատարվել են դեռևս 19-րդ դարի սկզբներին: Դա էլեկտրականության միջոցով անշարժ պատկերներ հաղորդելու առաջին պրիմիտիվ փորձն էր, որը ըստ էության հանդիսացավ հեռուստատեսության գյուտի հիմնաքարը:

Մեր դարասկզբին արդեն գոյություն ուներ հեռավորության վրա շարժվող պատկերների հաղորդման և՛ գաղափարը, և՛ պարզ սարքը: Հենց այդ տարիներին էլ ծնվեց «հեռուստատեսություն» բառը՝ թեև գոյություն ունեցող սարքերը դեռ շատ ճանապարհ ունեին անցնելու մինչև «հեռուստացույց» կոչվելու իրավունքի նվաճումը:

Բեռլինի համալսարանը նոր ավարտած, բաքվեցի արդյունաբերողի որդի Հովհաննեսի որոնող միտքը պատրաստվում էր մեծ թռիչքի:

Եվ ահա, 1907 թվականին գերմանական կառավարությունը արտոնագրում է 28-ամյա երիտասարդ էլեկտրատեխնիկ-ինժեներ Հովհաննես Ադամյանի

գյուտը, որով էլ սկիզբ է դրվում երկգույն՝ սև-սպիտակ հեռուստատեսության պարգացմանը: Սուղ, համեստ միջոցներով կահավորած լաբորատորիայում ստացած արդյունքների ճշտությունը անհրաժեշտ էր հաստատել պրակտիկայում: Ադամյանը նույն թվականին աշխարհում առաջին անգամ Բեռլինից 600 կմ հեռավորության վրա հաղորդում է շարժվող առարկաների երկգույն պատկերը:

— Ամեն ինչ լավ է, բացի այն, որ հաղորդման ժամանակ մենք կորցնում ենք բնության ամենագեղեցիկ պարգևներից մեկի՝ գույնի ընկալման հնարավորությունը,— մտմտում էր գիտնականը:

Հաղորդվող պատկերներն իրենց բնական գույներով տեսնելու միտքը հանգիստ չէր տալիս Ադամյանին: Այդ գաղափարը նա կյանքի կոչեց սովետական կարգերը հաղթանակած Պետրոգրադում, ուր մշտական բնակություն էր հաստատել գիտնականը: Տքնաջան աշխատանքը տվեց իր պտուղները: 1925 թվականին նա ստացավ եռագույն պատկերների հաղորդման արտոնագիրը: Քանի որ երեք գույների համադրումով կարելի է ստանալ մյուս բոլոր գույներն ու երանգները, ապա 1925 թվականը համարվեց գունավոր հեռուստատեսության գյուտի ծննդյան տարեթիվը, իսկ գյուտարարը՝ Հովհաննես Աբգարի Ադամյանը: Ադամյանը, այս անգամ էլ շտապեց փորձնական ճանապարհով ստացած իր արդյունքները ցուցադրել կյանքում: Նա նույն թվականին Երևանի պետական համալսարանում պատրաստեց եռագույն հեռուստացույց, որին տվեց «Հեռատես» հայկական անունը:

Այդ օրից էլ սկսվեց գունավոր հեռուստատեսության համաշխարհային երթը, իր հիմքում ունենալով Ադամյանի հայտնագործած հաջորդական համակարգը: Իսկ 1953 թվականից կիրառության մեջ մտավ Ադամյանի գյուտի տրամաբանական պարգացում հանդիսացող, այսպես կոչված, միաժամանակյա սիստեմը: Սա արդեն հնարավորություն էր տալիս նույն հեռուստացույցով ընդունել ինչպես գունավոր, այնպես էլ սև-սպիտակ հաղորդումներ:

Տեխնիկայի բարձունքները տանող ճանապարհին Ադամյանը դադար չառավ նույնիսկ... բուժման նպատակով: Օրեցօր ավերվում էր առողջությունը: Մեկը մյուսի ետևից նամակներ էին թռչում Բեռլինից Լենինգրադ: Ադամյանի հոչակավոր քույրերը՝ դաշնակահարուհիներ Հեղինեն ու Եվգինեն թախանձագին խնդրում էին եղբորը մեկ-երկու ամսով կտրվել գիտական աշխատանքից ու գնալ բուժվելու: Բայց Ադամյանի պատկերացմամբ մահը հենց աշխատանքից կտրվելն էր, թեկուզ դա լիներ ժամանակավորապես: Նա գերադասեց շարունակել իր գործունեությունը, մինչև որ 1932 թվականին՝ մահն ընդհատեց 53-ամյա գիտնականի կյանքը: Նա թաղվեց Լենինգրադի հայկական գերեզմանատանը, իսկ 1970 թվականին մեծ գյուտարարի աճյունը տեղափոխվեց Երևանի քաղաքային պանթեոն:

Ադամյանի կյանքը իմաստավորվեց 24 գյուտերով, որոնցից երկուսը՝ գունավոր հեռուստատեսության և լուսահեռագրության գյուտերը իրենց արարողի՝ Հովհաննես Աբգարի Ադամյանի անունը ոսկե տառերով գրեցին համաշխարհային տեխնիկայի պարգացման մեծ երախտավորների մատյանում:

*ԱՐՄԵՆ ՀԱՄԲԱՐՅԱՆ*

## ԴԻՏՈՒՄՆԵՐԸ՝ ԳԱԶԱՆՆԵՐԻ ԵՎ ԹՌՉՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ



*Ս. ԿՈՍՏԱՆՈՎԻՉ*

ԳԱԶԱՆՆԵՐԻ ԵՎ ԹՌՉՈՒՆՆԵՐԻ ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿՅԱՆՔԸ ՀԱՃԱԽ ՇԱՏ ԱՎԵԼԻ ԲԱՐԴ Է, ՔԱՆ ԹՎՈՒՄ Է ԱՌԱՋԻՆ ՀԱՅԱՑՔԻՑ: ՕՐԻՆԱԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ ՀԵՌՈՒՆ ՊԵՏՔ ՉԷ ԳՆԱԼ: ԴՐԱՆՔ ՇԱՏ-ՇԱՏ ԵՆ: ԱՅՍՕՐ ՄԵՆՔ ՁԵԶ ՀԵՏ ԿԼԻՆԵՆՔ ՂԱԶԱԽՍՏԱՆՈՒՄ՝ ԱԼԱԹԱՈՒԻ ԼԵՌՆԵՐՈՒՄ, ԿՈՒՐԳԱԼՋԻՆԻ ԱՐԳԵԼԱՎԱՅՐՈՒՄ:

### ԱՐՋԱՅԻՆ ԸՆՏԱՆԻՔ

Ոչ շատ խորը ձորի վերևում, ժայռի վրա աննկատ տեղավորված, հեռադիտակով դիտում եմ ինձնից մոտ երկու հարյուր մետրի վրա գտնվող արջին իր ձագերի հետ: Դուրս գալով դիմացի թեք լանջի եղևնուտից, հանգիստ սկսեցին շարժվել դեռ ոչ շատ բարձր խոտի վրայով, դեպի հոսանքն ի վար, մերթընդմերթ կանգ առնելով: Առջևից գնում էր ոչ մեծ մայր արջը բաց մոխրադեղնավուն մորթով: Ետևից քայլում էր մի մեծ գամփռի մեծության թխաթույր արջուկը, իսկ սրա ետևից՝



հաստլիկ, կլոր, կարճլիկ ոտքերով, ֆուտբոլի գնդակի պես գլորվող մեկ ուրիշը: Մայր արջը մերթ բարձրանում էր լանջի վրա և քարերը շուռ տալով՝ տա-

կին ինչ-որ բան էր փնտրում, մերթ կոճղերի հյութեղ կոթերն էր ուտում:

Հեռադիտակով հիանալի երևում էր, թե ինչպես է արջուկն ամեն ինչում ընդօրինակում մորը, բայց մեկ-մեկ շուռ էր գալիս և խկում եղբորը: Իսկ շարժուն և չարաճճի փոքրիկը ամենևին չէր հետաքրքրվում ուտելիքով: Ահա ինչ-որ բան նկատեց, ուրախ թռչկոտելով մոտ վազեց, գլորվեց մեռած կոճղի վրա և անհայտացավ մորու խիտ թփուտներում: Մայր արջը ետ նայեց, նկատեց փոքրիկի անհետանալը, անհանգստացավ: Նստեց ետևի թաթերի վրա, սյունի պես ձգվեց վեր՝ չորս-բոլորը նայելով, սակայն կորածին փնտրելու չգնաց: Դրա փոխարեն արջավարի մի ծանր ապտակ հասցրեց որդուն: Հարվածից սա նույնիսկ մի կողմ թռավ: Թաթով ծիծաղաշարժ կերպով քորելով գլուխը՝ այնպես հառաչեց, որ նույնիսկ ինձ մեղք դարձավ: Հետո երեք թաթերի վրա վազքով հասավ մորուտը և եղբորը քարշ տվեց մոր մոտ:

Արջային սովորական տեսարան: Նոր-նոր քայլել սկսող իր փոքրիկ ձագին մայր արջը դայակ էր կարգել անցյալ տարվա ծնունդ իր մեծ որդուն: Նրան այդպես էլ կոչում են՝ հոգածու դաստիարակ արջի քոթոթ:

## ԳԱՅԼԻ ՈՐՋԻ ՄՈՏ

Շատ հետաքրքիր բաներ կարելի է տեսնել գայլի որջի մոտ: Տափաստանային դաշնավուն բույրով հագեցած մեղմ քամին գետնին էր թեքում դեռ թարմ խոտի ցողունները: Կանաչը կարծես խոնարհվում էր, որ ենել եմ ոչ թե հրացանով, այլ՝ հեռադիտակով ու ֆոտոապարատով: Հեռադիտակով դիտելով սեղանի պես հարթ տափաստանը, հեռվում ինչ-որ կենդանու բան նկատեցի:

Անաղմուկ և առանց դոփյունի շարժվեցի առաջ: Այստեղ մի այն հեղեղատ կար, որի եզրին էլ նստեցի: Քամին ուղղակի երեսիս էր փչում: Հարմար տեղավորվելով, սկսեցի հեռադիտակով տեղանքը դիտել: Հեղեղատի հակառակ ափին մի մեծ դեղին բիծ գրավեց ուշադրությունս: Պարզվեց, որ փլուզման հետևանքով կավի դեղին շերտը բացվել է: Տակին սևին էր տալիս որջի անցքը: Մուտքի առաջ, հարթ փոքրիկ տարածության վրա բրդի կտորտանք, փետուրներ, սպիտակին տվող ինչ-որ ոսկորներ էին թափված:

Որջի տերերի վարքին հետևելը ծայրահեղ հետաքրքիր թվաց ինձ: Պառկեցի խոտի վրա ու անշարժացա: Դիրքս այնքան էլ հարմար չէր, բայց ինչի՞ չես դիմանա, միայն թե մի նոր փոքրիկ գաղտնիք էլ կորզես: Ասենք, երկար սպասելու կարիք չեղավ:

Թփերի մեջ մոխրագույն մի սիլուետ խլրտաց, և շուտով ոչ մեծ մի գայլ երևաց: Երախի մեջ ինչ-որ դեղնավուն բան կար: Սկզբում գազանը թափով վազում էր, որջին հասնելով անցավ քայլի: Հետո կարծես անվճռական կանգ առավ, ապա զգուշորեն մոտեցավ որջին և բերածը ցած դրեց: Որջից դուրս պրծավ խոշոր էգ գայլը: Ահեղ մռնչյունով վերցրեց գետնասկյուռի մսեղիքը և ներս տարավ: Մյուսը մեղավորի պես կծկեց պոչն ու փախավ:

Այստեղ էլ՝ դայակ: Դրա դերը կատարում էր անցյալ տարվա ծնունդ երիտասարդ գայլը: Ինքը դեռ ձագեր չունի, և իր ամբողջ եռանդը ծախսում է փոքր եղբայրներին կերակրելու համար: Ծնողների հետ սնունդ հայթայթելու է գնում, պաշտպանում է գայլիկներին թշնամիներից, իսկ երբ սրանք մի փոքր մեծանում են, զբաղեցնում է փոքրիկներին, մասնակցելով նրանց խաղերին:

Փոքրերի նկատմամբ այսպիսի հոգատարությունը բնորոշ է հոտերով ապրող ուրիշ շատ կենդանիների՝ փղերին, ծովացուլերին, դելֆիններին, բիզոններին, կուզերին:

*(Շարունակելի)*



# ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՀԱՓՇՏԱԿՈՒՄՆԵՐ

Շատ ու շատ դարեր առաջ, եղել է չի եղել, մի արքայադուստր է եղել, որը մի մեծ գաղտնիք է ունեցել: Մոտավորապես այսպես են սկսվում համարյա բոլոր հեքիաթները: Բայց մենք ոչ թե հեքիաթի մասին ենք պատմում, այլ իրողության, որի մասին հիշատակվում է հին չինական տարեգրություններում: Խոսքը մետաքսի գաղտնիքի մասին է: Արքայադուստրերից մեկին հաջողվում է դուրս գալ իր երկրի սահմաններից, գլխին՝ ծաղիկներից հյուսված պարմանայի գլխարկ, որի մեջ էլ թաքցված էին շերամի բոժոժները: Արքայադուստրը այն տարավ Հնդկաստանում ապրող իր սիրելուն: Այսպես շերամի գաղտնիքը հայտնի դարձավ մյուս երկրներում: Այս դեպքը դարձավ մ. թ. ա. XV դարի լրտեսության դասական օրինակ:



Բազմաթիվ լեգենդներ կան, այսպես կոչված՝ «հունական կրակի» մասին: Ականատեսների վկայությամբ, հունական կրակը՝ այն ժամանակների բացարձակ զենքը, «թռչում էր, ինչպես թևավոր օձի պոչ, կայծակի արագությամբ և ուժեղ աղմուկով»: Կրակն ուր ընկնում էր, սարսափելի պայթյուն էր առաջացնում և սև ծխով պարուրում շրջապատը: Ջրով հնարավոր չէր այն հանգցնել, ընդհակառակը, ավելի էր բորբոքվում: Միայն ավազը, քացախն ու մեզն էին նրա դեմն առնում:

Չորս հարյուրամյակ շատ երկրներ փորձում էին գտնել այդ զենքի գաղտնիքը: Հատուկ ջանասիրություն (սակայն ապարդյուն) ցուցաբերեցին իտալացիները XI դարում, Պիզայի ավերումից հետո: Միայն մահմեդականներին հաջողվեց երկարատև որոնումներից հետո թափանցել կրակի գաղտնիքների մեջ: Սակայն հետագայում նրա դեղատոմսը նորից կորսվեց:



Հետաքրքիր է կարծր ճենապակու պատմությունը: Այն հազարամյակներ շարունակ արտադրում էին Չինաստանում և տեխնոլոգիայի գաղտնիքը խստությամբ պահպանվում էր մինչև XVIII դարը: Ֆրանսիացի ճիզվիտ դ'Անտրեկոլը կարողացավ թափանցել Կինչ-տը-չենի (Կիանգսի) կայսերական արհեստանոցները և հայրենիք ուղարկած նամակներում նկարագրեց պատրաստման եղանակները: «Ճենապակու» քաղաքում աշխատում էին մոտ մեկ միլիոն բանվորներ: Ճենապակի եփող երեք հազար վառարաններ բանում էին զոր ու գիշեր: Ֆրանսիացին մանրամասն ուսումնասիրեց տեխնոլոգիան և հասկացավ, որ արտադրության համար հիմք է ծառայում կաոլինը: Մի քանի նմուշներ նրան հաջողվեց ուղարկել Ռեոմյուրին: Դա պատահեց այն ժամանակ, երբ ֆրանսիացի քիմիկոսներ Դարսեն ու Մակերը Լիմոժի շրջակայքում հայտնաբերեցին կաոլինի հանքավայր: Սովորական (փափուկ) ճենապակի առաջ էլ էր պատրաստվում Լենսանում և Սևրում, բայց հռչակավոր Սևրյան կարծր ճենապակին երևան եկավ միայն 1764 թվականին: Հետագայում ճենապակու գաղտնիքը հափշտակեցին և անգլիացիները:




Այսպես ֆրանսիացիներն ու անգլիացիները արդյունաբերական լրտեսության շնորհիվ, կարողացան առաջ անցնել գերմանացիներից: Քիչ ավելի ուշ գերմանացի ալքիմիկոս Բյոտհերը (որը պնդում էր, թե ոսկի է գտել) հիմնվելով հանքաբան Չիրնաուզի ուսումնասիրությունների վրա, ինքնուրույն հայտնագործեց կարծր ճենապակու գաղտնիքը: Այդ ժամանակ նա իր լաբորատորիայի դռան վրա հետևյալ մակագրությամբ մի ցուցանակ կախեց. «Անմեկնելի են գործերն աստծո, որը ոսկու վարպետին դարձնում է բրուտ»: Իր հայտնագործության գաղտնիքը Բյոտհերը հնարամտորեն էր թաքցնում: Հռչակավոր սաքսոնական (մեյսենյան) ճենապակու արտադրության գաղտնիքի կեսը նա ստիպել է անգիր անել գիտնական Նեմիցին, իսկ մյուս կեսը՝ Հարտելմային: Վերջինս գիտեր ինչպես արտադրել ճենապակին, իսկ Նեմիցը՝ ինչպես ջնարակել:



Անգլիացի պատմաբան Ջորջ Սևիջը իր «Գերմանական ճենապակին XVIII դարում» գրքում գրում է, որ այն ժամանակվա լրտեսներն այնքան լկտի դարձան, որ սկսեցին սիրահետել ֆաբրիկատերերի աղջիկներին, որ կարողանան գողանալ նրանց հայրերի գաղտնիքները: Բանտերը լցվեցին ճենապակու արտադրության կեղծ գաղտնիքներ վաճառող խաբեբաներով և իսկականը վաճառած բանվորներով: Դրեզդենից տասնյակ կիլոմետրերի վրա գտնվող իջևաններում վխտում էին գործակալներն ու լրտեսները:

Շուտով, դրեզդենյան վարպետ-փախստականների օգնությամբ, Վիեննայի մոտերքում հիմնվեցին ճենապակու գործարաններ: Սակայն գերմանացիներից մեկը՝ Շտելցելը, խղճի խայթ չզգալով, կաոլինին սկսեց վնասակար նյութեր խառնել, դառնալով ժամանակակից սաբոտաժավորների (նենգադուլավորների) նախորդներից մեկը:



Ուշադրության է արժանի լրտեսության մի դեպք ևս. Անգլիայում XVIII դարում մի դարբին էր ապրում Ֆոլեյ անունով: Բարձրորակ պողպատի արտադրության գաղտնիքը գտնելու հույսով նա հագնում է շրջիկ երաժշտի շորեր և ջութակը ձեռքին ոտքի տակ տալիս ողջ Եվրոպան: Ոտաբոբիկ, քրջերը հագին, նվագելով Բելգիայի, Գերմանիայի, Չեխիայի, Իտալիայի, Իսպանիայի դղյակներում ու պանդոկներում, պողպատի արտադրության բազմաթիվ նրբություններ էր իմանում: Այսպես նա շատ հետաքրքիր տվյալներ հավաքեց, և նրա գործերը բարգավաճեցին: Եվրոպայի բազմաթիվ դարբիններ են Ֆոլեյին սպանելու համար վարձկան մարդասպաններ ուղարկել, փորձել իրենց կողմը գրավել նրա բանվորներին, սակայն այդ բոլորը չխանգարեցին նրան հարըստանալու:



Մրցակիցների պայքարում մեծարժեք շատ գաղտնիքներ են անհետ կորել, օրինակ՝ ճկվող ապակու արտադրության գաղտնիքը: Չի հայտնաբերված երբեմնի խոշոր նկարիչների օգտագործած բազմաթիվ յուղաներկերի ստացման գաղտնիքը: Կրոմվելի ժամանակներում նրա «սև կաբինետում» (նամակագրության լրտեսման) մի մարդ էր աշխատում, որ կարողանում էր նամակի ծրարից պատճենը հանել՝ առանց այն բացելու: Իսկ թե ինչպես էր այդ անում, մինչև հիմա էլ անհայտ է մնացել:



XVII դարի սկզբին Հռոմում թանկարժեք քարով մի մատանի էր հայտնըվել, որը ոչ միայն շլացուցիչ փայլփլում էր, այլև կարող էր ծխամորճ վառել (իսկ դրա համար բավական մեծ ջերմություն է անհրաժեշտ): Այդ մատանու գաղտնիքը մինչև օրս էլ մնում է անհայտ:

Վերջապես՝ անհայտ մնացած մի գաղտնիքի մասին ևս: Խոսքը մի խառնուրդի մասին է, որը փոխում է ալմաստի գույնը, դրանով իսկ խիստ գցելով նրա արժեքը: Հին փաստաթղթերի վկայությամբ, միջնադարում որոշ ալքիմիկոսներ գիտեին ինչպես ալմաստը «մաքրել» գունեղությունից: Տեսականորեն դա հնարավոր կդառնա, եթե ներկված խառնուրդները դարձվեն անգույն: Սակայն դրա համար անհրաժեշտ է նեյտրոնների հզոր ռադիոակտիվ աղբյուր, մի բան, որից ալքիմիկոսները տեղեկություն չունեին: Ուրեմն ի՞նչ էին նրանք օգտագործում:



XVII դարի վերջում երևան եկան արտոնագրերը (պատենտ), որոնք որոշ չափով գյուտարարներին պաշտպանում էին «գողերից»: Արտոնագրի տիրոջը իրավունք էր վերապահվում գողին օրենքով հետապնդել մինչև 20 տարի, որից հետո հայտնագործության գաղտնիքը դառնում էր հանրության սեփականությունը:

Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ 11. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՌԱՖԱՅԵԼ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶԱՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱԿՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—06—88, 56—14—96:

ՎՖ 07748: Պատվեր 1667: Տպաքանակ 53700: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 23/X 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# ԲԱՐԵԳՈՐԾԸ

ԻՎԱՆ ՍՎԱՐՆԻԿ

Ջահել Քուռկիկն ազատասեր,
Որ իր կյանքում սանձ չէր տեսել,
Վազվզում էր ու խրխնջում,
Ուզած խոտը իսկույն փնջում,
Դաշտում ազատ, լայնատարած...
Ինչպես եղավ,
Գայթեց հանկարծ:
— Քուռի՜-քուռի՜,—
Վրա հասավ պայտարն շտապ,—
Արի՛ մոտս, պայտեմ ես քեզ,
Որ էլ երբեք չսայթաքես:

— Երևում ես շատ խելացի,
Ո՞նց կլինի առանց պայտի, առանց սանձի...
Շատ բարի ես, շատ սրտացավ,
Բայց հավատա՛, բարի՛ պայտար,
Որ այսպես էլ վատ չէ բնավ:—

Ասաց Քուռկիկն ու սլացավ:

Թարգմ. Վ. ԲԱՐԱՅԱՆԻ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ